

# «ԸՆԴՕՐԻՆԱԿՈՒՄ ԵՆՔ ՄԵՐ ԾՆՈՂՆԵՐԻՆ»

# «ԱԼԻՔ» ՃԱՄԲԱՐՈՒՄ



Հենց Ծաղկաձոր մըտար, ճանապարհի ձախ կողմը, իրար մոտիկ մի քանի պիոներական ճամբարներ կտեսնես: Ճամբարներից առաջինը, որ անտառի փեշին է գտնըվում, «Ալիքն» է: Ինչպես մյուս ճամբարներում, «Ալիքում» էլ կան երգի-պարի, նկարիչների, թմբկահարների, շեփորահարների և բազմաթիվ այլ խմբակներ, սակայն «պատանի հեռագրողների» և «պատանի կապավորների» խմբակ միայն «Ալիքն» ունի: Իզուր չէ, որ այս խմբակներն ընտրել են «Ընդօրինակում ենք մեր ծնողներին» նշանաբանը, որովհետև պարապմունքներին մասնակցողները բոլորն էլ կապավորների երեխաներ են:

Պատանի հեռագրողների խմբակի անդամները սովորում են հաղորդել, ընդունել և մեքենա-

գրել հեռագրերը, ծանոթանում են հեռագրիչ մեքենայի կառուցվածքին, կարողանում են առանց դժվարության մեքենայի մասերը քանդել և հավաքել:

Պակաս հետաքրքիր չէ նաև հեռախոսավարների խմբակը: Ճամբարում կա 6 տեղանոց ներքին և մեկ միջքաղաքային կոմուտատոր: Եթե հանկարծ ապարատներից մեկնումեկը փչանա՝ ոչինչ, անսարքությունները հայտնաբերելն ու վերացնելը խմբակի անդամների համար րոպեական գործ է:

# ԵԹԵ ՎԵՐԱՔՆՆՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՍ...

Իհարկե, լավ չէ դպրոցում վերաքննություն ունենալ, բայց եթե արդեն ունես, արի «Ալիք» ճամբար. այստեղ վերաքննություններ ունեցողների խմբակ էլ կա: Ջոկատի մանկավարժները կպարապեն քեզ հետ, այնպես որ վերջում դժգոհ չես մնա և դպրոցում վերաքննությունների ժամանակ քո պատասխանով գուցեև զարմացնես ուսուցիչներիդ:

«Ալիքում» ընդունված կարգ է նաև ամեն տարի անցկացվող շարադրությունների մրցույթը: Աշխատիր լավ գրել: Այդ շարադրություններով «Ալիքի» մանկավարժները ստուգելու են քո ընդունակությունները և թե ինչպես ես տիրապետում մայրենի լեզվին:

# ՄՐՑՈՒՅԹ ԱՆՏԱՌԻ ԲԱՑԱՏՈՒՄ

Անտառի բացատներում ինչ տեսակ բույսեր ասես կան՝ թե ուտելու և թե թունավոր սունկեր, թե դեղաբույսեր, թե հատապտուղներ և այլն, և այլն:

Այդ բոլորը ճանաչելն ու հիշելը շատ դժվար է, գրեթե անկարելի: Իսկ ճամբարի «Կանաչ դեղատան» համար եթե ուրցի տեղ երիցուկ քաղես կամ դաղձի տեղ որևէ անպետք խոտ՝ ամոթ բան է, վրադ կծիծաղեն: Իհարկե, եթե նախորոք բուսաբանության դասագիրքդ հետդ բերեի՜ր... Սակայն այս տարի «Ալիքում» շփոթվողներ համարյա չկան, որովհետև բոլոր ջոկատներին ճամբարի պետը բաժանել էր «Памятка школьнику» գրքույկը, որի մեջ նկարագրված են հանրածանոթ և անծանոթ շատ հատապտուղներ, դեղաբույսեր ու ծաղիկներ:

Որևէ ծաղիկ, հատապտուղ կամ դեղաբույս ես քաղել՝ համեմատիր գրքույկում եղածի հետ և կիմանաս նրա ճիշտ անվանումը, հատկությունները և թե որքա՞ն է մարդուն օգտակար:

Գրքույկին ծանոթանալուց հետո ալիքցիները դուրս եկան արշավի և անտառի բացատում մրցույթ անցկացրին: Նրանք ամեն մի ծաղկից ու դեղաբույսից հավաքեցին մի-մի նմուշ և պատմեցին՝ ով ինչ գիտեր այդ ծաղկի կամ դեղաբույսի մասին, անելուց սկսած մինչև թառամելը:

*ՄԽԻԹԱՐ ՈՍԿԱՆՅԱՆ*




# ԵՂԲԱՅՐՆԵՐՆ ՈՒ ՀՍԿԱՆ

(Նենեցական հեքիաթ)




Երկու եղբայր են լինում, մեկը՝ հարուստ, մյուսը՝ աղքատ: Աղքատն ունենում է միայն մի հին կացարան, ուր ապրում է ծեր մոր հետ: Հարուստն ունենում է ինը հազար եղջերու, որոնց արածեցնում էին ինը հովիվ: Ինը հովիվն ապրում էին ինը կացարանում: Հարուստն ուներ նաև մի շատ մեծ կացարան, որի մեջ ապրում էին նրա ինը կանայք:

Աղքատ եղբայրը մի օր գալիս է հարուստ եղբոր մոտ՝ ուտելիք խնդրելու: Ինքն ու մայրը ուտելու բան չունեին: Հարուստն ասում է.

— Հանգիստ չունեմ, էլի՞, զահլաս տարար: Ե՞րբ ես դու քո ուտելիքն ունենալու:

Վռնդում է, մի պատառ ուտելիքն ինչ է՝ չի տալիս:

Աղքատը վերադառնում է տուն: Մայր ու որդի քաղցած պառկում են քնում: Առավոտյան որդին գնում է որսի: Բայց դատարկ փորով ի՞նչ որս: Հեռու գնալու ուժ չի ունենում, մոտիկ տեղերում գազաններ չկային: Դատարկաձեռն վերադառնում է տուն: Նույնը և երկրորդ օրը, երրորդ օրը:

Մի օր էլ մայրը գնում է գետի սառցանցքից ջուր բերելու, տեսնում է գետի մոտ մի հսկա է կանգնած: Հըսկան էլ տեսնում է ծեր կնոջը: Նա իր հսկայական դահուկներով՝ մեկ-երկու, հասնում է ծեր կնոջ մոտ:

— Ի՞նչ ես անում այստեղ, տատիկ:

— Ջրի եմ եկել, մատաղ,— ասում է ծեր կինը,— որդիս որսից կվերադառնա, գոնե մի գդալ տաք ջրով սառած ստամոքսը տաքացնի: Վաղուց է, ինչ բան չենք դրել մեր բերանը: Բախտներս չի բերում, որս չի ընկնում որդուս ձեռքը:

Հսկան քիչ միտք անելուց հետո, ձեռքը կոխում է գետի սառցանցքից ներս: Եվ երբ հանում է, ամեն մատից կպած մի մեծ ձուկ է դուրս գալիս: Հսկան ձեռքը թափ է տալիս, ձկները նետում ձյան վրա և ասում.

— Առա, վերցրու, եփիր, դու էլ կեր, որդուդ էլ կերակրիր, որդուդ էլ ասա, թող ձուկ որսա, ինչպես որ ես որսացի:

Հսկան հրաժեշտ է տալիս նրան և գնում գետի մյուս կողմը: Մեկ-երկու քայլ է գցում և արդեն այնտեղ է:

Մայրը ձուկը եփում է: Գալիս է որդին, դարձյալ դատարկ ձեռքով: Մայրն ասում է.

— Տես ինչ յուղալի ձուկ եմ եփել:

Որդին զարմանում է.

— Ա՛յ մեր, դու ինչպե՞ս կարողացար այսպիսի ձուկ բռնել:

Մայրը պատմում է հսկային հանդիպելու մասին: Առավոտյան աղքատը գնում է սառցանցքի մոտ: Ձեռքը սառցանցքով կոխում է գետի մեջ, ինչպես որ հսկան էր արել, և իսկույն զգում է, թե ինչպես է ձեռքը ձգվում ցած: Նա դժվարությամբ հանում է ձեռքը. ամեն մի մատին կպած մի մեծ ձուկ է դուրս գալիս: Մայր ու որդի արդեն սկսում են կուշտ ուտել:

Մի անգամ որդին մորն ասում է.

— Ա՛յ մեր, դու ձու՛կ եփի, ես գնամ հսկային տեսության:

Դահուկների արահետով նա գնում

է գետի մյուս կողմը: Գնում է երկա՜ր, և տեսնում է մի մե՜ծ, շա՜տ մեծ կացարան: Կանգ է առնում կացարանի մոտ, դահուկները հանում է, մտնում ներս: Կացարանի մի կողմը քնած էր հսկան: Կինը նստած էր նրա մոտ: Կացարանի մյուս կողմը նստած էին քարե մի ծերուկ և մի ծեր կին, բաց բերաններով: Հսկայի կինը տեսնում է հյուրին և ուզում է հսկային արթնացնել: Բայց հսկան չի արթնանում: Կինը դանակի կոթով խփում է նրա գլխին: Հսկան նոր միայն վեր է թռչում: Տեսնում է աղքատին և ասում է.

— Լավ ես արել, որ հյուր ես եկել ինձ,— ապա նայում է մի կողմ և ձայնում,— ի՞մ դահուկներ, ի՞մ գոտի, ի՞մ օղապարան, որտե՞ղ եք:

Ասում է թե չէ՝ դահուկները մոտենում են նրան: Մոտիկ են գալիս գոտին և օղապարանը. գոտին օղակում է նրա աճռելի փորը, օղապարանը փաթաթվում է ձեռքին: Հսկան քարե ծերունու բերանից մտնում է և դուրս գալիս քարե ծեր կնոջ բերանից, գրկած բերելով հենց նոր մորթված մի եղջերու: Նա եղջերուն նետում է հատակին և ետևից էլ նետում է դանակը: Դանակն ինքն իրեն մի վայրկյանի մեջ եղջերվին մորթազերծ է անում և ապա կըտըրտում միսը: Մսի կտորներն իրենք իրենց նետվում են կաթսայում եռացող ջրի մեջ: Միսը եփվում է, և հսկան ասում է.

— Սիրելի հյուր, կե՛ր, հյուրասիրվի՛ր:

Աղքատը մի քանի յուղոտ կտորներ է ուտում, շուտ կշտանում ու ասում.

— Շնորհակալ եմ, արդեն զգում եմ, թե ինչպես ավելացավ ձեռքերիս ու ոտքերիս ուժը.

Հսկան ձայն է տալիս, կանչում իր աղջկան և դառնում աղքատին, ասում.

— Իմ գեղեցկուհի աղջկան կնության եմ տալիս քեզ: Նրա հետ էլ տալիս եմ այս հրաշագործ պարկը: Պարկի մեջ ձեր հարստությունն է: Բայց պարկը կբացես միայն քո կացարանում: Եթե չհամբերես, եթե շուտ բացես, քո կյանքը առաջվանից էլ վատ կլինի:

Աղքատը հարսնացուի հետ ճամփա է ընկնում իր կացարանը: Նա պարկն առած գնում էր, իսկ պարկը լղարիկ էր, ասես թե դատարկ էր: Ի՞նչ հարստություն էր նրա մեջ:

Գնում էին նրանք սառցակալած գետի վրայով: Մեկ էլ սառույցի տակից ձայներ լսվեցին, երգում էին ջրային չարքերը.

Աղքատ մարդ, հապա կաց,
Ուսիդ պարկը հապա բաց,
Գիտես պարկի մեջ բա՞ն կա,
Նայիր, պարկում բան չկա:
Աղքատ մարդ՝ անճարակ,
Ձեռքդ են տվել դատարկ պարկ:

Բայց աղքատը չի լսում չարքերին, չի բացում պարկը: Հարսնացուի հետ տուն է հասնում և նոր միայն պարկը բացում: Պարկից դուրս է թռչում բոռերի պարս: Ծխնելույզով նրանք դուրս են թափվում: Աղքատը հարսնացուի և մոր հետ դուրս է վազում, տեսնելու, թե ինչ է պատահել: Տեսնում են կացարանի շուրջը եղջերուներին տեղ ու դադար չկա: Դրանք հսկայի բոռերն էին, որ դարձել էին եղջերուներ: Փոքր եղբայրը դառնում է հարուստ, տունդրայի ամենահարուստ մարդը:

Մեծ եղբայրը՝ հարուստը, իմանում, իսկույն վազում է նրա մոտ:

— Եղբայր, պատմիր տեսնեմ, թե դու այդ ինչպե՞ս միանգամից դարձար այսպես հարուստ:

Փոքր եղբայրը պատմում է ինչպես որ եղել էր: Մեծ եղբայրը վազում է

սառցանցքի մոտ: Ձեռքը կոխում է սառցանցքի մեջ, երկար պահում, հանում, ոչ մի ձուկ էլ չի հանում: Նա դահուկներով սլանում է հսկայի մոտ: Հսկան նրա առջև նույնպես դնում է յուղալի եղջերու: Մեծ եղբայրը վրա ընկած ուտում է մինչև վերջին կտորը:

— Կերա կշտացա, ծանրացա, ոտի վրա կանգնել չեմ կարողանում, պառկեմ քեզ մոտ քնեմ, — ասում է նա:

Հսկան պատասխանում է.

— Ես քեզ չեմ հրավիրել գալ քնել այստեղ: Կացարան ունես, գնա քո կացարանում քնի:

— Լա՛վ, կգնա՛մ, — ասում է մեծ եղբայրը, — միայն թե դու կնության տուր ինձ քո աղջկան և տուր հրաշագործ պարկ:

Հսկան ասում է.

— Իմ աղջկան կնության չեմ տա քեզ, բայց հրաշագործ պարկ կտամ, վերցրու, — և հարուստին մի նիհար պարկ է տալիս, մեջն ասես բան չկար:

Հարուստը վերցնում է և հևիհև վազում տուն:

Սառցակալած գետի վրայով անցնելիս, սառցի տակից ձայներ է լսում. երգում էին ջրային չարքերը.

Այ սարսաղ, սարսաղ հարուստ,
Ունենալուց խելառած,
Հարուստ խելառ, հապա կաց,
Պարկիդ բերանն հապա բաց,
Նայիր պարկիդ մեջ ինչ է,
Պարկիդ մեջը դատարկ է:

Հարուստը մտածում է. «Պարկը ոնց որ թե դատարկ է, այնպես թեթև է, ի՞նչ եղջերու, ի՞նչ բան»: Եվ պարկի բերանը բացում է: Պարկի միջից աղմուկով դուրս են թռչում բոռեր ու գնում հարուստի կացարանի կողմը: Հարուստը ուրախացած, որ դրանք բոլորը եղջերուներ կդառնան, շտապում է նրանց ետևից: Իսկ չարքերը քրքջում են և երգում.

Նայե՛ք, նայե՛ք դուք նրան,
Կերած-լեթված սարսաղին,
Տեսեք նրան ինչ տեղին
Գայլերը լավ պատժեցին...

Հարուստը վազում է տուն, տեսնում է իր բոլոր եղջերուները խեղդամահ, իսկ նրանց չորս բոլորը գայլեր՝ ամպի պես չոքած:

Այսպես էլ ահա փոքր եղբայրը մնում է հարուստ, իսկ մեծը՝ աղքատ: Բայց փոքրը մեծին ուտելիք էր տալիս, չէր վռնդում, ինչպես մեծն էր մի ժամանակ փոքրի հետ վարվում:

*Ռուսերեն վերապատմեց ՄԱՐԿ ՎԱՏԱԿԻՆԸ*
*Թարգմ. ԱՆ. ՍԱՀԻՆՅԱՆԸ*



սառցանցքի մոտ: Ձեռքը կոխում է սառցանցքի մեջ, երկար պահում, հանում, ոչ մի ձուկ էլ չի հանում: Նա դահուկներով սլանում է հսկայի մոտ: Հսկան նրա առջև նույնպես դնում է յուղալի եղջերու: Մեծ եղբայրը վրա ընկած ուտում է մինչև վերջին կտորը:

— Կերա կշտացա, ծանրացա, ոտի վրա կանգնել չեմ կարողանում, պառկեմ քեզ մոտ քնեմ, — ասում է նա:

Հսկան պատասխանում է.

— Ես քեզ չեմ հրավիրել գալ քնել այստեղ: Կացարան ունես, գնա քո կացարանում քնի:

— Լա՛վ, կգնա՛մ, — ասում է մեծ եղբայրը, — միայն թե դու կնության տուր ինձ քո աղջկան և տուր հրաշագործ պարկ:

Հսկան ասում է.

— Իմ աղջկան կնության չեմ տա քեզ, բայց հրաշագործ պարկ կտամ, վերցրու, — և հարուստին մի նիհար պարկ է տալիս, մեջն ասես բան չկար:

Հարուստը վերցնում է և հևիհև վազում տուն:

Սառցակալած գետի վրայով անցնելիս, սառցի տակից ձայներ է լսում. երգում էին ջրային չարքերը.

Այ սարսաղ, սարսաղ հարուստ,
Ունենալուց խելառած,
Հարուստ խելառ, հասպա կաց,
Պարկիդ բերանն հասպա բաց,
Նայիր պարկիդ մեջ ինչ է,
Պարկիդ մեջը դատարկ է:

Հարուստը մտածում է. «Պարկը ոնց որ թե դատարկ է, այնպես թեթև է, ի՞նչ եղջերու, ի՞նչ բան»: Եվ պարկի բերանը բացում է: Պարկի միջից աղմուկով դուրս են թռչում բոռեր ու գնում հարուստի կացարանի կողմը: Հարուստը ուրախացած, որ դրանք բոլորը եղջերուներ կդառնան, շտապում է նրանց ետևից: Իսկ չարքերը քրքջում են և երգում.

Նայե՜ք, նայե՜ք դուք նրան,
Կերած-լեթված սարսաղին,
Տեսեք նրան ինչ տեղին
Գայլերը լավ պատժեցին...

Հարուստը վազում է տուն, տեսնում է իր բոլոր եղջերուները խեղդամահ, իսկ նրանց չորս բոլորը գայլեր՝ ամպի պես չոքած:

Այսպես էլահա փոքր եղբայրը մնում է հարուստ, իսկ մեծը՝ աղքատ: Բայց փոքրը մեծին ուտելիք էր տալիս, չէր վռնդում, ինչպես մեծն էր մի ժամանակ փոքրի հետ վարվում:

*Ռուսերեն վերապատմեց ՄԱՐԿ ՎԱՏԱԳԻՆԸ*
*Թարգմ. ԱՆ. ՍԱՀԻՆՅԱՆԸ*



# ՎԵՐՀՈՒՇ

ՎԱՀԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Առավոտ է... Տատիս հետ
Գնում ենք արտը հնձի.
Ամռան թեժ-թույխ կրակից
Եփվում է կաթը սնձի:
Խումբ-խումբ լորեր են թռչում
Մեր ոտքերի առջևից,
Սլանում է միտքը իմ
Այդ լորերի ետևից:
Տատս բռնած իմ ձեռքից
Վաղ էր ընկել ճանապարհ,
Իր խունացած գոգնոցում
Հաց էր կապել մեզ համար:
Հացը թևիս տակ դրած
Քայլում եմ ես իր կողքից,
Ինչ-որ մրջյուն է ելնում
Ծունկը պատռած իմ փողքից:
— Տես,— ասում էր տատս,— տես,
Լավ է, որ շուտ ենք եկել,
Հովով քաղենք արտը մեր,
Քանի շոգը չի ընկել:

Արտն էլ ինչ էր, կարճ գարի,
Ձմեռվա կարճ օրվա պես,
Կարճ էր, կպած էր գետնին,
Հասկը կծղել էր ասես:
Ոչ գերանդի էր բռնում,
Ոչ էլ մանգաղ... չոքում ենք,
Եվ չոքեչոք, բուռ-ձեռքով,
Մինչ մայրամուտ քաղում ենք:
Հետո՝ հացի ենք նստում
Բույրերի մեջ խոտերի,
Փառաբանում է տատս
Աստծուն հողի ու ջրի:
Նրա օրհնանքն են տանում
Արտույտները դեպ երկինք,
Մութը գալիս է հեռվից,
Բռնում է դաշտ ու լերինք:
Դառնում էինք ապա տուն,
Նախիրի հետ մտնում գյուղ,
Մեր կապուտակ երդիկից
Աստղեր էին թափվում թույխ:
Թափվում էին թիթեռներ,
Ալ զատիկներ ու մայիս,
Նրանց մեկ-մեկ ես բռնում,
Խառնում էի երազիս:

ՌԱԶՄԻԿ ԼԱԼԱՅԱՆ

# ՄԱՅՐՍ

Կուզեի մայրս մի արև լինեի.
Չէ՞ որ արևը ոչ վախճան ունի
Եվ ոչ էլ ձմեռ...

***

Ես լցված եմ արևով,
Եվ իմ դուռն է բաց.
Այնքան լույս եմ խմել, որ
Լույսով եմ հարբած...

***

Թել-թել շողերն արևի
Գտել տունը իմ փոքրիկ
Ու ներս են մտել...
Եվ այնպես են ծիծաղում
Եվ այնպես են շողշողում...
Չէ՞ որ իրենց սպասող
Մի սիրտ են գտել...

# ԱՆՈՒՆՆ ԱՍԱ ԱՅԴ ԾԱՂԿԻ

*ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Մի ծաղիկ կա մեր
Փոքրիկ պարտեզում,
Ասես արև է,
Գետնից է ծագում:
Սիրուն գլուխը
Օրորում է հեզ,
Ու թվում է, թե
Բարևում է քեզ:
— Շնորհակալ եմ,—
Ասում է,— ձեզնից,
Որ խնամում ու
Պահպանում եք ինձ:

# ԳԵՏՆԻՆ ԸՆԿԱԾ ԳԻՐՔԸ

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

Պապը թոռանն ասաց.
— Գետնից վերցրու գիրքը:—
Տատը վրա հասավ,
Գիրքը վերցրեց ինքը:
Բարի տատը որ կա,
Մի՞թե թոռն ինքը
Պիտի թողնի մնա
Գետնին ընկած գիրքը:





# «Էլի իրեք ա՞ դրել»

Դրուժինայի խորհրդի հանձնարարությամբ գնացել էի տնարարության դասասենյակ: Աշակերտուհիներից մեկը օրագիրը կատաղած շպրտեց սեղանին և ասաց.

— ԻՐԵՔ ՍՏԱՑԱ: ԻՆՉՔԱՆ ԼԱՎ ԵՄ ԳԾՈՒՄ, ԻՐԵՔ Ա ԴՆՈՒՄ:

Մի քիչ հետո մոտեցավ մեկ ուրիշը և հարցրեց.

— ԱՂՋԻ, Ի՞ՆՉ ԴՐԵՑ ՔԵԶԻ:

Բայց այդ հարցին առաջին աղջիկը չպատասխանեց:

— ԷԼԻ ԻՐԵՔ Ա՞ ԴՐԵ:

— Բա էլ ի՞նչ:

Լսելով այդ փոքրիկ խոսակցությունը, մտածեցի. մի՞թե նրանք չեն հասկանում, որ ուսուցչուհին չի դընում իրենց գնահատականը, այլ իրենք են ստանում:

*ԱՆԱՀԻՏ ԱԴԱՄՅԱՆ*
*Նոր Հաճն ավան,*
*№ 1 դպր., 6-րդ դասարան*



# ՄԱՆՈՒԿՆԵՐԻ ՍԻՐԵԼԻՆ

**(Կոռնեյ Չուկովսկու ծննդյան 100-ամյակի առթիվ)**

Ձեզնից ո՞վ է, որ չի կարդացել «Բժիշկ Այբոլիտը», ամենալավ, ամենաուրախ մանկական գրվածքներից մեկը, որ ստեղծվել է երբևէ: Այդ գիրքը, ինչպես Չուկովսկու մյուս մանկական գործերը, հատկապես «Չոփչոփիկը» («Мойдодыр») պոեմը, լույս են տեսել միլիոնավոր օրինակներով և մանկական գրողի մեծ հռչակ բերել հեղինակին: Չուկովսկին անցել է ստեղծագործական կյանքի մեծ, գրեթե 60-ամյա ճանապարհ, գրել է բազմաթիվ արժեքավոր երկեր, որոնց հասցեատերը ոչ միայն մանուկ ընթերցողն է, այլև գրականագետը, թարգմանիչը, լեզվաբանը, մանկավարժը, մի խոսքով՝ հասակ առած, կյանքի փորձ ունեցող ընթերցողը:

Դրանց մեջ առանձին տեղ են գրավում «Նեկրասովի վարպետությունը» գրականագիտական աշխատությունը, որի համար հեղինակն արժանացել է լենինյան մրցանակի: Ապա նաև «Բարձըր արվեստ» գիրքը՝ գուցե և ամենալավ աշխատությունը, որ գրվել է թարգմանական արվեստի մասին, բազմաթիվ ուսումնասիրություններ և հուշեր ռուս նշանավոր գրողներին նվիրված, «Կյանքի պես կենդանի» հիանալի գիրքը՝ գրավիչ լեզվով խոսելու և գրելու մասին: Երբ մեծանաք և կարդաք այդ գրքերը, դուք ևս կապրեք այն բավականությունը, որ ունենում են մարդիկ իմաստալից, համ ու հոտ ունեցող գրքեր կարդալիս:

Իսկ հիմա կուզենայի ձեզ ծանոթացնել Չուկովսկու գրքերից մեկի հետ, որ կրում է «Երկուսից մինչև հինգը» վերնագիրը:

Ի՞նչ է պատմում այդ գիրքը. այն, թե ինչպես են երկուսից հինգ տարեկան երեխաները «լեզու առնում», ինչպես են այդքան կարճ ժամանակում յուրացնում մայրենի լեզուն, ինչպես են սկսում ճանաչել շրջապատի աշխարհը: Կյանքից առնված հարյուրավոր օրինակներ է հավաքել նա նամակագրական կապ հաստատելով

հազարավոր ծնողների հետ: Ահա օրինակ.

Մի մանչուկ շարունակ հարցնում է մորը՝ գիշերները ու՞ր են գնում: Մայրը դժվարանում է պատասխանել՝ իրոք, ու՞ր են գնում: Մի օր էլ հայտնըվելով մի խոր փոսի մոտ, երեխան «գյուտ» է անում՝— Հիմա իմացա ուր են գնում, թաքնվում են այս փոսի մեջ:

Գիշերը մի աղջիկ արթնացնում է մորը՝

— Մամա, երբ բարի գայլը հանդիպի իր ծանոթ ընձուղտին՝ կուտի՞ նրան, թե՞ ոչ...

Չորսուկես տարեկան մի աղջկա համար կարդում են «Ոսկի ձկնիկի հեքիաթը».

— Ա՜յ քեզ հիմար ծերուկ,— բացականչում է փոքրիկը,— մեկ նոր տուն է ուզում ոսկի ձկնիկից, մեկ նոր տաշտակ: Ավելի լավ կլիներ մի նոր պապավ ուզեր:

Մի երեխա տեսնում է փնչացող ու գոլորշի արձակող մի շոգեքարշ, բացականչում է.

— Հասկացա, ամպերը շոգեքարշն է շինում:

Երբ ննջեցնում են մի աղջկա՝ սա սպառնում է մեծերին.

— Հիմա մութ կստեղծեմ:

Եվ փակում է աչքերը՝ վստահ որ դրանով ամբողջ աշխարհը սուզեց խավարի մեջ:

Այս և շատ ուրիշ օրինակների հիման վրա Չուկովսկին հանգում է այն եզրակացության, որ երկուսից հինգ տարեկան երեխաները մտքի վիթխարի աշխատանք են կատարում աշխարհի նախնական ճանաչման և մայրենի լեզուն յուրացնելու համար: Չուկովսկին դա համարում է «մանկան հոգևոր կյանքի մեծագույն հրաշքներից մեկը»:

Երեխայի ներաշխարհի խորունկ իմացության շնորհիվ է, որ Չուկովսկու գրվածքները այնքան հարազատ են մանուկների հոգեբանությանը և այնպես գրկաբաց են ընդունվում նրանց կողմից:

1916 թվականին, արդեն մեծ համբավի տեր գրաքննադատ և գրականագետ Չուկովսկու մեջ Մաքսիմ Գորկին նկատելով մանկական գրողի տվյալներ, նրան խորհուրդ է տալիս գրել երեխաների համար: Չուկովսկին հետևում է նշանավոր գրողի ու ավագ ընկերոջ խորհրդին և այդ ժամանակից ի վեր իր գործունեությունը կապում մանկական աշխարհի հետ:

Կորնեյ Չուկովսկին ծնվել է 1882-ին, Պետերբուրգում: Մանկության և պատանեկության տարիները անց է կացրել Օդեսայում՝ դժվարին պայմաններում: Պատանի Չուկովսկուն՝ օրինակելի աշակերտին, վտարել են գիմնազիայից այն պատճառով, որ նա պատկանել է հասարակության «ստորին խավերին»: Եվ պատանին ստիպված է եղել իր ամենօրյա հացը վաստակել սեփական քրտինքով: Աշխատել է և, միաժամանակ, զբաղվել ինքնակրթությամբ՝ հասնելով հիացմունքի արժանի արդյունքների:

Չուկովսկու կյանքը սեփական ուժերով ինքն իրեն կրթելու մի գեղեցիկ օրինակ է:

Իր կյանքի պատանեկան տարիների մասին գրողը հետագայում պատմել է «Արծաթե գերբը» գրքում, մի հրապուրիչ գիրք, որ թարգմանվել է հայերեն և լույս է տեսել 1963-ին: Խորհուրդ կտայինք կարդալ:

Կյանքի վերջին տարում, 1969-ին, երբ 87 տարեկան էր, նա ժամանակ և ուժ գտավ զբաղվելու Հովհաննես Թումանյանի ստեղծագործությամբ: Եվ հրապարակեց մի հիանալի հոդված, ուր կան այսպիսի տողեր. «Այն մարդուն, որ գրել է «Մի կաթիլ մեղրը», «Շունն ու կատուն», «Մուկիկի մահը», իրոք որ չի կարելի չդասել համաշխարհային արվեստի առաջնակարգ վարպետների շարքը»:

1969-ի աշնանը, երբ Հայաստանում մեծ շուքով տոնվում էր Թումանյանի ծննդյան 100-ամյակը, տոնակատարությանը մասնակցելու համար Երևան հրավիրվեց նաև Չուկովսկին: Ի պատասխան նա ուղարկեց այսպիսի հեռագիր. «Ծերության պատճառով հարկադրված լինելով տանը մնալու՝ ես այսօր ամբողջ հոգով Երևանում եմ: Իմ սիրելի հայ ժողովրդին ողջունում եմ թումանյանական հպարտ ու բերկրալի տոնի առթիվ: Շնորհակալություն հրավերի համար: Կեցցե մեծ Հովհաննեսը: Կեցցե այն մեծ ժողովուրդը, որ Հովհաննեսին թելադրել է նրա երգերը»:

Դրանից մեկ ամիս անց նշանավոր գրողը, մանուկների սիրելին, վախճանվեց, հետնորդներին թողնելով գրական մեծարժեք ժառանգություն, որ ինչքան գրավիչ, նույնքան ուսանելի է և՛ մեծերի, և՛ փոքրերի համար:

ԿՈՐՆԵՅ ՉՈՒԿՈՎՍԿԻ

# Հեռախոսը

**(հատված)**

1.

**Հեռախոսս զնգաց երկար.**
**— Ո՞վ է խոսում:**
**— Փիղն է, եղբայր:**
**— Ի՞նչ եք ուզում:**
**— Դեսի՜ց-դենի՜ց:**
**— Ավելի ճի՞շտ:**
**— Քաղցրավենիք:**
**— Իսկ ու՞մ համար:**
**— Պարզ է՝ որդուս:**
**— Ինչքա՞ն է պետք:**
**— Մի հինգ-վեց փութ:**
**Նա դեռ նոր է կանգնում ոտի,**
**Փոքր է անչափ, շատ չի ուտի:**



2.



**Եվ նորից զնգաց իմ հեռախոսը:**
**Այս անգամ**
**Խոսում էր կոկորդիլոսը.**
**— Ախ, ցավդ տանեմ,**
**Ինքդ որոշիր,**
**Քանի՞ զույգ է պետք մեզ կրկնակոշիկ.**
**Ինձ, իմ տիկնոջը,**
**Եվ մեր Տոտոշին:**
**— Սպասիր հապա,**
**Հենց անցյալ շաբաթ**
**Կրկնակոշիկ չե՞մ ուղարկել**
**Չորս զույգ:**
**— Ախ, ճիշտ է, ճիշտ է,**

Վաղուց են բերել։
Ստացել ենք ու հաճույքով կերել։
Եվ սպասում ենք, ընկեր սիրելի,
Որ մեր ընթրիքին կստանանք էլի
Տասը զույգ համով,
Տասը զույգ հոտով,
Փափուկ,
Անուշիկ կրկնակոշիկ։

*Թարգմ. ՅՈՒ. ՍԱՀԱԿՅԱՆԻ*



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

# ԵՐԿՈՒ ԱՍՏՂԻԿ

Պապիկը, բռնելով Աստղիկի ձեռքը, տարավ պարտեզ՝ սպիտակ ծաղկով բույսի մոտ։

Սպիտակ, մանր ծաղիկներով այդ բույսը պապիկը մի անգամ էլ նրան ցույց էր տվել անձրևից հետո, երբ նա շողշողում էր բյուրեղապակու նման։

Պապիկը բացատրել էր և ցույց էր տվել այդ բույսի ցողունը ծածկող մանր մազմզուկները, որոնց վրա նստած անձրևի կաթիլներն էլ հենց արևի տակ փայլփլում էին շողակնի պես։

— Դեռ քնած ես լինում, երբ ես իջնում եմ պարտեզ և նայում ծաղկին, եթե մինչև առավոտյան ժամը ինը սրա ծաղիկները դեպի գետին են խոնարհված և ծաղկաթերթիկներն էլ լրիվ չեն բացվում, նշանակում է ցերեկն անպայման անձրև կգա, իսկ եթե ծաղիկները վերև են նայում լրիվ բացված ծաղկաթերթերով, ապա համոզված եղիր, որ անձրև չի գա, որքան էլ երկինքը պատված լինի ծանր, գորշ ամպերով։

— Իսկ ի՞նչ է սրա անունը,— հարցրեց Աստղիկը։

— Դուք երկուսդ էլ նույն անունն ունեք՝ Աստղիկ։

Աղջիկ Աստղիկն ուրախ նայեց ծաղիկ Աստղիկին, որն իր հերթին նայում ու ժպտում էր աղջիկ Աստղիկին։

*ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ*

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 51. ԽՈՍՔԻ ԵՎ ԵՆԹԱԽՈՍՔԻ, «ՄՏՔՈՎ ՏԵՍՆԵԼՈՒ» ԵՎ «ԽՈՍՔԻ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ» ՄԱՍԻՆ

Վիլյամ Շեքսպիրի «Համլետ» ողբերգության մեջ կա այսպիսի մի տեսարան. արքայազնը մեն-մենակ, տխուր մտքերի մեջ ընկած, գիրք է կարդում. ներս է մտնում Պոլոնիուսը՝ խորամանկ մի պալատական, որին Համլետը չի սիրում, և հարցնում է՝ ի՞նչ ես կարդում: Համլետը պատասխանում է. «Բառեր, բառեր, բառեր»:

Ի՞նչ է ուզում ասել արքայազնն իր պատասխանով:

Մի շտապեք ասել, դա այնքան էլ հեշտ չէ, որովհետև ենթադրությունները այնքան շատ են, որ դըժվար է ստույգ պատասխանել: Ձեր կարծիքով՝ ինչքա՞ն շատ, քանի՞ միտք, քանի՞ վերաբերմունք կարելի է արտահայտել երեք անգամ բառեր ասելով: Կհավատա՞ք, շեքսպիրագետների հավաստմամբ՝ մի քանի տասնյակ: Բայց ինչպե՞ս: Ահա թե ինչպես: Կարելի է ասել արհամարհական հնչերանգով՝ և միտքն այն կլինի, թե «Քո խելքի բանը չէ՛, ծերուկ»: Կարելի է ասել հուսահատությամբ՝ «Ինչքան ուզում ես կարդա, դրանից ի՞նչ օգուտ»: Կշտամբանքով՝ «Խանգարում ես, հանգի՛ստ թող ինձ»: Սպառնալիքով՝ «Կորի՛ր աչքիցս»: Դառնությամբ՝ «Ոչինչ չկա մխիթարական, նույնիսկ՝ գրքերում»: Հումորով՝ «Բառեր են, էլի, ուրիշ ինչ պիտի լինեն»: Եվ այսպես մինչև մի քանի տասնյակ միտք և վերաբերմունք: Ինչի՞ շնորհիվ: Հնչող խոսքի արտահայտչական հնարավորությունների, հնչերանգի՝ ինտոնացիայի շնորհիվ:

Սա նկատի ուներ անգլիացի թատերագիր Բերնարդ Շոուն, երբ գըրում էր. «այո ասելու համար կա հիսուն եղանակ, ոչ ասելու համար՝ հիսուն եղանակ, մինչդեռ այո կամ ոչ գրելու համար՝ միայն մի եղանակ»: Ի՞նչ է կամեցել ասել գրողը: Այն, որ միայն մի ձևով գրվող այո-ն կարելի է արտաբերել և՛ վճռաբար, և՛ թերահավատությամբ, և՛ փաղաքշաբար, և՛ գոհունակությամբ, և՛ դժգոհությամբ, և ուրիշ-ուրիշ հուզական գունավորումներով:

Սա դեռ մի այո-ն է, իսկ երբ բանը գալիս է խոսքի ավելի մեծ միավորների, խոսքի հնչյունային իմաստավորման ասպարեզը մեծանում է շատ ավելի: Ահա թե որքան մեծ են խոսքի ենթախոսքը, տեքստի ենթատեքստը բացելու հնարավորությունները:

Բայց ի՞նչ են խոսքը և ենթախոսքը:

Խոսքն այն է, ինչ մենք ասում ենք, ենթախոսքն այն, ինչ ուզում ենք ասել:

Բայց մի՞թե դրանք նույնը չեն:

Ո՛չ, նույնը չեն, ավելի ճիշտ՝ կարող են և նույնը լինել, բայց կարող են և չլինել, նույնիսկ՝ ասվող խոսքի ճիշտ հակառակը լինել:

Օրինակ՝ «Դու համակրո՞ւմ ես Արամին» հարցումին Գրիգորը պատասխանում է՝ «Օ՜, այն էլ ինչպե՜ս»: Ի՞նչ ասաց Արամը՝ պարզ է, բայց ի՞նչ կամեցավ ասել՝ պատասխանել չենք կարող, քանի դեռ չգիտենք նա ինչպես է ասել իր խոսքը: Ինչ-ը խոսքն է, տեքստը, ինչպես-ը՝ ենթախոսքը, ենթատեքստը: Ինչ-ն այն է, որ ասում կամ գրում ենք, ինչպես-ն այն, որ ուզում ենք ասել: Գրիգորի պատասխանը հասկանալու համար կարևոր է իմանալ՝ նա հաստատաբա՞ր է ասել իր խոսքը, հեգնանքո՞վ, արհամարհանքո՞վ, փաղաքշաբա՞ր, թե մի այլ եղանակով:

«Միշտ չէ կարևոր, թե ինչ է ասվում, բայց միշտ կարևոր է, թե ինչպես է ասվում»,— գրել է Մաքսիմ Գորկին:

Այդ ինչպես-ի ըմբռնումն է, ահա, որ մշտապես մեր ուղեկիցը պետք է լինի ոչ միայն խոսելիս ու լսելիս, այլև գրելիս ու կարդալիս, նույնիսկ՝ մտքում կարդալիս:

Դերասանները, ասմունքի արտիստներն այդ գործի իսկական վարպետներ են: Ի՞նչ եք կարծում՝ մենք ինչո՞ւ ենք այնպես հափշտակությամբ լսում նրանց: Իրենց հրաշալի ձայնի՞, գրավիչ կերպարանքի՞, գեղեցիկ շարժումի՞: Այո՛, դրանք էլ իրենց տեղն ունեն, բայց գլխավորապես այն պարագայի, որ նրանք մտովի «տեսնում» են իրենց կարդացածը և դրա շնորհիվ «տեսցրնում» մեզ, զգում են խոսքի ենթատեքստը և զգացնել տալիս մեզ:

Մտաբերեցեք Սասունցի Դավթի նժույգին, պատկերացրեք Քուռկիկ Ջալալու տեսքը: Հիմա լսեցեք, թե ասմունքի նշանավոր վարպետ Սուրեն Քոչարյանն ինչպես է «տեսել» նրան. «...Ինչքան տալիս եմ սիրածս ձիու անունը՝ միշտ տեսնում եմ նրա սլացիկ կազմվածքը, նույն թափանցիկ, փնչացող ռունգերը, նույն մարդկայնորեն արտահայտիչ, կայծակնացայտ ու կարմրաբիբ աչքերը, փրփուր և շոգի արձակող, հնացող կողերը և կայծերը, որ թըռչում են պայտերի տակից: Ուրիշ մի ձիու չէր սիրի իմ Դավիթը, ուստի և նրա հետ միասին ես էլ պարտավոր եմ սիրել»: Արտիստն իր «տեսածի» զգացողությունը հասցրել էր այն աստիճանի, որ սկսել էր «շոշափել» ձիուն. «Երբ ես շոյում եմ Քուռկիկ Ջալալուն՝ ձեռքիս ափով զգում եմ նրա հրացայտ աչքերի խոնավությունը, արտևանունքների խտուտը, թավշանման շուրթերի թրթիռը»:

Ահա թե արվեստի ինչ բարձունքների կարող է հասնել «տեսնելու», խոսքի ենթիմաստն զգալու և արտահայտելու վարպետությունը:

Երբ մեկը մի դեպք է պատմում և չի կարողանում իր պատմածով գրավել լսողներին, ուշադրություն դարձրեք՝ պատճառն այն չէ՞, որ նա չի «տեսնում» այն, ինչի մասին պատմում է, չի ապրում իր պատմածով, չի զգում իր խոսքի ենթաիմաստը: Չի տեսնում, չի ապրում, չի զգում, ուրեմն չի էլ կարող տեսցնել, ապրեցնել, զգացնել տալ ուստի և՝ համակել ու գրավել:

Պատճառն, իրոք, կարող է դա լինել: Ուրիշ պատճառներ էլ կարող են լինել: Դրանցից մեկն էլ չհասկանալն է այն պարագայի, որ կոչվում է «խոսքի իրադրություն»: Սա ի՞նչ է նշանակում: Շատ պարզ մի բան՝ պետք է իմանալ ու՞մ հետ, ի՞նչ միջավայրում, ի՞նչ հանգամանքներում ինչպես պիտի խոսել:

Հիշո՞ւմ եք խրատական հեքիաթի այն տղային, որ միջավայրին ու հանգամանքներին չբռնող բաներ է ասում շարունակ և ծեծ է ուտում շարունակ:

Սրանով ժողովուրդը հեգնել է այն մարդկանց, որ չեն հասկանում, ավելի ճիշտ՝ սխալ են հասկանում «խոսքի իրադրությունը» և ընկնում են ծիծաղելի վիճակի մեջ: «Իմ լեզուն իմ թշնամին է» ասացվածքը վերաբերում է նաև այդպիսի մարդկանց:

Չափազանց կարևոր է իմանալ որտեղ ինչ ես խոսում: Ոչ պակաս կարևոր է իմանալ որտեղ ինչպես ես խոսում:

Այդ ինչպես-ի մեջ են մտնում բանավոր խոսքի անխուսափելի ուղեկիցներ դիմախաղը, ժեստը, շարժումները, կեցվածքը ևս: Դրանք էլ իրենց հերթին խոսքին տալիս են հուզական ուժ, արտահայտչական այլևայլ երանգներ:





# «ԱՐԵՎԻԿ» ԲԱԿԱՅԻՆ ՃԱՄԲԱՐԸ



«ԱՐԵՎԻԿ» բակային ճամբարը գործում է Լենինյան շրջանի պիոներպալատին կից, և, հավանաբար, դա էլ նպաստել է զանազան խմբակների առկայությանը՝ ասեղնագործության, նկարչության, հերյուռնագործության, ծղոտագործության, փողհարների, ակորդեոնի...

Պիոներպալատն ունի 25 մետրանոց սպորտային լողավազան, որը նույնպես ճամբարին է տրամադրել: Լողի մարզիչները ճամբարի բոլոր երեխաներին լող են ուսուցանում:

Ծղոտով աշխատում են միայն բարձր դասարանցիները: Փոքրերը օգտագործում են սերմեր, խխունջներ, բրինձ, դդումի կորիզներ, թիթեռնիկների թևեր, մի խոսքով՝ ամեն տեսակի բնական նյութեր: Մովսիսյան Մելիքը կոկորդիլոս և կրիա էր պատրաստել կոնի մասնիկներից, Մարգարյան Մերուժանի ծաղկամամանները կակաչի վարսանդից ու խխունջներից էին, Աննա Յարդարյանի ու Մարինե Վարդանյանի տիկնիկները՝ եգիպտացորենի տերևներից: Բարձր դասարանցիները հիմնականում աշխատում են թեմաներով: Սենյակում անկյուն են հատկացրել «Ով ինչպես է տեսնում բնության գեղեցկությունը» թեմային: Զարմանում ես, որ ծղոտից կարելի է այդքան գեղեցիկ ծառեր, թռչուններ, կենդանիներ ստեղծել:

Ասեղնագործության խմբակի ասեղնագործած անձեռոցիկներին նայելով դժվար է պատկերացնել, որ երեխաները նման վարպետության են հասել ընդամենը մի ամսում: Իսկ տիկնիկների համար գործած հագուստները, եթե իհարկե չափերը ներեին, հաճույքով կհագնեին իրենք՝ երեխաները ու մեծահասակները:

*Ս. ԶԱՔԱՐՅԱՆ*

# ԺՊԻՏՆԵՐ

**1765 թ. Վիտ Ֆուչեկ անունով մի չեխ վենի բռնվեց տեղի քահանայի հետ, պնդելով, որ քամին բավականաչափ ուժ ունի, որպեսզի օդում կարողանա պահել մարդուն: Վիտը սագի փետուրից թևեր պատրաստեց և դրանցով քարափից հաջողությամբ վայրէջք կատարեց:**

**— Դե հիմա ասա տեսնեմ, իմ թևերը օդում ո՞վ պահեց,— հարցրեց Վիտը քահանային:**

**— Չարքերը,— համոզված պատասխանեց քահանան:**

**Ամերիկացի գյուտարար Դոն Էպիկը թղթից, ասեղի մեծության ինքնաթիռի միկրոմոդել պատրաստեց: Բայց ինչպե՞ս լուծել մոտորի հարցը:**

**Երկար մտածելուց հետո, նա ամեն թռիչքի ժամանակ իր այս ինքնաթիռին էր կպցնում... ճանճ: Բայց, ավա՜ղ, թռիչքները դադարեցին, որովհետև կենդանիների պաշտպանության միության կողմից գյուտարարը կանչվեց դատական պատասխանատվության:**

**Հռոմեական կայսր Դիոկլետիանոսը ծերության տարիներին հրապուրվեց բանջարանոցամշակությամբ: Երբ մոտիկները գովում էին նրա խելքը՝ իբրև պետության գլուխ, կայսրը տանում ցույց էր տալիս նրանց իր բանջարանոցը և ասում.**

**— Հռոմեական կայսրությունը կառավարել կարող է ծիտն անգամ, բայց դուք փորձեք անցնել այսպիսի կաղամբ:**

Հրաչյա Մաթևոսյան

# ԱՍՏՂԵՐԻ ՀԵՏ ԽՈՍՈՒՄ ԷՐ ԻՄ ՁԻՆ

Իրիկվա կրակ-ճրագվառոցի հետ ապիս երևաց: Վազեցի, մտա թևի տակ:

— Էլի ուտքո՞վ եկար: Էլի չբռնվե՞ց...

Ապիս ալարելով բերանը բացեց.

— Բռնեցի...

— Բա ու՞ր է:

— Գրպանումս է:

— Է՜,— իմ արևով նեղացա ես:

— Չէ, քուռակ ջան, ոնց որ երևում է՝ էդ քուռակը բռնվող պտուղ չի: Էսօր յոթ ռանգ քրտինք եմ փոխել, յոթ ձևի մոտեցել եմ՝ մոտ չի գալիս... Ախր, ուշացրինք, է՛, երկու ամսից դառնում է երեք տարեկան: Նա, օրենքով, հիմա պիտի մի կես տարվա ձի լիներ, բայց իմ մեղքով ոչ ոտն է պայտի երես տեսել, ոչ մեջքն է թամբի երես տեսել, ոչ էլ գիտի սանձն ինչ բան է... Ապիս անսպասելի ժպտաց:— Մանկությունը երկարեց:

— Դա լավ է, չէ՞, ապի,— հարցրի կամացուկ:

— Մանկությունը ջահելության ու ծերության հաշվին արժե՞ երկարացնել: Պապիդ ոտքերը ցավից տրաքում են, լա՞վ է: Էսօր քեզ չաշխատացնեմ, ասեմ՝ թող տղիս մանկությունը երկարի, կըլինի՞, դո՛ւ ասա... Մանկությունից պիտի սովորեք... Դու էլ, քուռակն էլ...

Մենք խոսելով հասանք մեր դուռը: «Բարի իրիկուն, ժողովուրդ, ո՞նց եք»-ի փոխարեն ասաց ապիս.

— Էսօր էլ չբռնվեց, էտքան մարդկանց էլ գործից կտրեցի, հնար չեղավ... —ու էլի ծլթացրեց:

—Ոչինչ, մի սրտնեղի,— ասաց նանըս:— Էդ ո՞ր քուռակն է անբռնել մընացել, որ դա մնա: Էսօր չբռնվեց, էգուց կբռնեք: Վերջին քուռակությունն է անում:

— Էգուց էլի հնձվորներին գործից կտրեմ, թե քուռակ եմ բռնում,— սըրտնեղեց ապիս:— Դու հո գիտես, այ Սոնա, որ հարյուր քուռակ եմ իմ ձեռքով

բռնել, խեղդել, հոգնեցրել, վազեցրել, պայտել, թամբել, ձի դարձրել...— Ապիս երանությամբ ժպտաց:— Էս մեկն ուրիշ է, մոտ չի թողնում: Քանի անգամ կալմեջ արինք, հա-հա՜, հրես-հա, բըռնում էինք, թվում էր, թե բռանս մեջ է, մեկ էլ քամի էր դառնում, քամու ըմբռման մեջներովս անցնում: Վախենում եմ, թե մեկնումեկին էլ տրորի...

Ապիս ինձ հետը սար տարավ: Տարավ, որ օգնեմ քուռակը բռնենք: Գըրնում եմ ու, երևի, ոտքս խերով լինի և քուռակը հրաժեշտ տա իր մանկությանը: Դժվար բան է. ձին զգում է, որ իր ազատ, անհոգ քուռակը գնում է ձի դառնալու : Եվ տխուր դունչը քսում է

Հնձվորները քանի անգամ կալմեջ արին՝ փախավ: Զարմանք էր: Այնպես փախավ, որ ոչ մեկը նրա ետնից չնայեց: Բոլորը իրենց ձեռքերի մեջ էին նայում, բոլորին թվում էր, թե բռնել են, բայց... Քանի օր է այսպես ուրախանում ու նույն վայրկյանին էլ խաբվում են: Պապս սուլում էր՝ ձին գալիս էր, քուռակը գալիս էր նրա ետնից, բայց հենց զգում էին վտանգը՝ ձին էլ քուռակի ետնից էր փախչում: Ստիպված պարանները առան ու իջան ձորի նեղ տեղը՝ ձորի բուկը: Պարանը թուլացած գցեցին ճամփի մեջտեղը, իրենք թաքնըվեցին՝ պարանի ծայրերը ձեռքերի մեջ ամուր պահած: Վեց ուժեղ տղամարդիկ, պինդ հնձվորներ: Այսպես շարքով, որ բան է, թե մեկի ձեռքից պրծնի, մյուսները բռնեն: Ես ու ապիս, էլի մի երկու հոգի մեր ձին ու քուռակը



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻՐԱԿՅԱՆԻ

նրան՝ գնա, ճիշտը դա է: Ժամփին թըվում էր, թե քուռակը ես եմ բռնելու: Ապիս էնպես էր հավատացնում, թե հույսը ինձ վրա է: Բայց երբ հասանք, ասաց.

— Որ բռնելիս լինենք, դու մի բարձըր տեղ կկանգնես, մի քարի վրա, մի բլրի վրա, մի հեռու ապահով տեղ, որ ոտի տակ չընկնես...

քշեցինք ձորի վրա: Այնտեղ, ձորում ջուր կար, ձիերը գիտեին, որ այնտեղ ջուր կա, օրը ճաշ էր դարձել, ջրի ժամ էր, ապիս այնպես էր սուլում, որ ձիերի մեջ արթնացավ ջուր խմելու ցանկություն: Քուռակն առաջ ընկավ, որով-





հետև նա գիտեր ջրի տեղը և գիտեր, որ ջուրը սկզբում պտտուրինն է: Բայց մեր ձին քուռակի ետևից երերալով էր գնում, երևի գիտեր, որ արդեն բռնըվելու է իր քուռակը: Մեր ձին այնպես էր մեզ նայում, ոնց որ հուսադրում էր, թե ինքն էլ կօգնի, որ քուռակը բռնվի, բայց այնպես զգուշորեն էր անում, որ քուռակը հանկարծ չզգա, որ մայրը իրեն տալիս է մարդկանց ձեռքը: Քուռակն էլ ձգվելով էր իջնում: Հետո բընազդով զգաց, որ պարանն առնելու է բկին, փորձեց ետ դառնալ, բայց մայր ձին իր մեծ զանգվածով փակել էր ետդարձի ճամփան, կողքերից թռչելու, փախչելու ճար չկար, կանգնելը իմաստ չուներ, ու նա շարժվեց: Հաջորդ քայլքի հետ գետնից պարանը թռավ ու ձըգվեց: Քուռակը ակնթարթորեն գլուխը տակը տվեց ու պարանի տակով անցավ: Ձգվեցին մյուս պարանները: Երկու կողմից կանգնեցին հնձվորները՝ պատրաստ հարձակվելու քուռակի վրա: Մի քիչ հետո քուռակը ձորն էր իջնում՝ ետևից քարշ տալով մի քանի մարդկանց: Նրանց մնում էր շուտ բաց թողնել պարանները:

Ապիս սուլոցը դադարեցրեց:

Ես ձորն իջա: Մեր ձին ջուր էր խըմում, մեր քուռակը քսվում էր մորը: Ես նայում էի ձիուն, «ձի ջան, ձի ջան» ասելով մոտեցա: Ձին նայեց վերևի կողմը, տեսավ ուրիշ իջնող չկա, շունչը փչելով երեսին, ոնց որ թե ասեր.

«Դու էլ ծարավ կլինես, խմիր...»

Ես լեզուս հանեցի՝ տես, չորացել է: Բայց լեզուս չորացել էր ոչ թե ծարավից, այլ տագնապից:

«Ես շատ եմ ծարավ...»— ասացի:

«Վերևից խմիր,— լուռ հուշեց մեր ձին,— ձիու խմած տեղից մի խմիր: Տես, քուռակը խմեց ու ձի դարձավ: Մի վախեցիր, մոտեցիր:— Մեր ձին գլուխը դրեց մեջքիս ու հրեց դեպի քուռակը: — Էնքան պարապ մնացի էս սարերում, քիչ էր մնում ձիությունս էլ մոռանամ»:

Ես մոտեցա մեր պեծիկ քուռակին, շոյեցի մեջքը, շոյեցի վիզը, շոյեցի ճակատը: Նա դեռ խամ է, նա պարտավոր է քացի գցել, կծել, փախչել: Բայց շատ է հանգիստ: Ոնց որ յոթ փութ բեռ հենց այս պահին են իջեցրել նրա շալակից: Կամ գուցե ինձ մարդու տեղ չի դնում:

«Կարո՞ղ ես նստել»,— ձին հարցական նայեց ինձ:

«Մոռացե՞լ ես,— հիշեցրի ես,— քեզ էնքա՞ն եմ նստել»:

«Բայց նստել ես իմ թամբին, ես գընացել եմ հանգիստ վարգով,— իր հերթին հիշեցրեց ինձ մեծ ձին,— ես չեմ մոռացել, որ ինձ վրա փոքր տղա է նըստած: Քուռակը, ճիշտ է, իմ խմած տեղից ջուր խմեց ու ձի դարձավ, բայց քանի դեռ սանձ չի տեսել, ոտքը պայտ չի տեսել, չի թամբվել, հեծյալ չի տեսել՝ մնում է քուռակ: Մեկ էլ տեսար քուռակությունը բռնեց ու հոպ, քեզ վրայից գցեց...»

«Չեմ գցի,— գլուխը թափ տվեց քուռակը,— նստում է, թող նստի»:

«Մեծերը որ խոսում են, դու մեջ մի ընկիր, սա մայրական իմ խորհուրդն է քեզ»,— ձին մռայլ նայեց քուռակին:

Քուռակը տխուր վրնջաց:

Ձին նայեց ինձ ու աչքով արեց: Հաջորդ պահին ես թռա, նստեցի քուռակին ու բռնեցի նրա բաշը:

«Ո՞ւր տանեմ»,— քուռակը նայեց մորը:

«Հեծվորը գիտի,— պոչը շարժեց ձին, — ես հիմա գնում եմ մեծ տիրոջս մոտ, նամուսն էլ լավ բան է: Խեղճ մարդը քանի օր ոտքով սար է բարձրանում, իրիկունները ծնկահան լինելով նորից տուն է գնում:

Ձին մոտեցավ, լիզեց քուռակի քիթ-մռութը:— Դե, քեզ բարի ճամփա...»

Թամբին նստած մնալը լավ բան չի: Դժվար չի ձի նստելը: Միայն թե ձին պետք է զգա, որ մարդավարի մարդ է նստել: Ով էլ հեծնի՝ միշտ առաջին հեծյալին է հիշելու: Դե արի էս քուռակի վրա մնա: Թամբ չկա: Սանձ չկա:

«Թամբին նստած մնալը դժվար չի,— փնչաց ձին,— տղա ես՝ էդպես հեծիր: Տզի նման կպիր մեջքին, բաշն առ ձեռքդ, ոտքերդ ամուր սեղմիր կողերին, մի քիչ կռացիր առաջ ու բաց թող: Թող էնքան տանի, մինչև հոգնի: Գընացեք, ես կգամ...»

Մի խաղալ սկսեցին ձիուս ոտքերը, մի խաղալ սկսեցին ձիուս աչքերը, ձիս ամբողջովին կրակե խաղ դարձավ: Աշխարհն ինձ են տվել: Ա՜յ քեզ քուռակ: Ա՜յ քեզ կրակի կտոր: Ճամփան էլ ինքն էր ընտրում, գնալու ձնն էլ: Ձիս եկավ հնձվորների միջով տվեց անցավ: Ես հազիվ լսեցի նրանց ձայնը. «Բռնեք. հիմա տղին կգցի, կջարդի, հասեք...»

Ո՞ւր հասնեին, ո՞նց հասնեին: Ձիս թռած էր գնում: Շատ որ գնաց, աչքերիցս ջուրը սկսեց թափվել: Հենց օդում թռնա-կախվեցի վզից.

— Չհոգնեցի՞ր,— հարցրի:

Քիչ հետո ապիս եկավ՝ մեր ձին նըստած: Իջավ, շոյեց քուռակին, գրպանից մի կտոր շաքար հանեց, տվեց, թևքով սրբեց քուռակի քրտինքը, ձեռքերը դըրեց ուսիս.

— Ապրես, — մի կտոր շաքար էլ իմ բերանը դրեց:

Ես շատ էի ուզում ասել, որ աղբյուրի ջրի մոտ ձին էլ, քուռակն էլ խոսեցին: Բերանս բացեցի, որ ասեմ, քուռակը ճակատը քսեց երեսիս, ոնց որ ասելիս լիներ՝ գործ չունես: Հետո ինչքան էլ ցանկացա ասել, չկարողացա...

Մթան հետ տուն հասանք: Շեմին կանգնած էր նանս: Ապիս ասաց. «Բարի իրիկուն, ժողովուրդ, ո՞նց եք»: Նանըս ասաց.

— Ասի, չէ՞, որ կբռնվի:

— Բա ոնց, էդ որ քուռակն է անբըռնել մնացել, որ սա մնար:



*ԺԱՆԵԹ ՔԱՍՈՒՆԻ*

*լիբանանահայ գրող*

# ՔԱՐԵՐԸ ՊԱՏՄՈՒՄ ԷԻՆ...

Ես ինքս էլ չգիտեի։ .

Գրքերում էի կարդացել, որ մի երկրի մարդիկ այսպիսի սովորություն ունեն. երբ բարի գործ են կատարում, սպիտակ խճաքար են գցում գավաթի մեջ։ Ու հետո, երբ գավաթը լցվում է, համրում են միջի խճաքարերը, տեսնելու թե ինչքան բարի գործ են կատարել։

Ես այս պատմեցի աշակերտներիս։

Բավական ժամանակ անցավ։ Մոռացա պատմածս։

Մի առավոտ, երբ դասարան մտա, փոքրիկները իրարու ինչ-որ բան էին փսփսում։

— Օրիորդ, Տենին բան է ուզում Ձեզ ցույց տալ, բայց ամաչում է։

— Տենի, այստեղ եկ,— ասացի։

Տենին մոտս եկավ։ Երկչոտ, բարի և ուշիմ աշակերտ էր։ Հազիվ ինը տարեկան։ Ետևում ինչ-որ բան էր թաքցրել բռի մեջ։

— Ի՞նչ է պատահել, Տենի։

— Օրիորդ, ձեր պատմածի պես վարվեցի։ Գավաթը լցրել եմ ճերմակ խճաքարերով։

— Ճերմակ խճաքարե՞ր, այսինքն բարի գործեր։

— Այո՛, օրիորդ։

Հանեց տոպրակից գավաթը։ Ջրի սովորական մի գավաթ էր, լցված ծովային ճերմակ խճաքարերով։

Ես հուզված էի։ Մի պահ նայեցի բոլորին, որոնք դիտում էին ինձ և Տենիին- տեսնելու, թե ինչ եմ անելու։

— Տենի,— հուզված ասացի,— պատմիր այս քարերից ամեն մեկի պատմությունը։

Տենին գավաթը դրեց սեղանի վրա ու կանգնեց։ Մեկ ինձ էր նայում, մեկ ընկերներին։ Բոլորս լուռ սպասում էինք, որ նա քարերին խոսեցնի։

— Այս քարը ինչո՞ւ ես դրել,— հարցրեցի, վերցնելով մի հատ։

— Մայրիկս շատ հոգնած էր այդ օրը։ Սեղանը ես հավաքեցի և պնակները լվացի։

— Իսկ ա՞յս մեկը։

— Մեր շենքի յոթերորդ հարկում ծեր մարդ է բնակվում։ Տեսա շուկայից գալիս է և ահագին բեռ ունի։ Վազեցի, ձեռքից վերցրի ու իր տուն հասցրի, քանի որ մեր շենքը վերելակ չունի։

— Ապրես, Տենի։ Իսկ այս ճերմակ ու կլոր փոքրիկ քարն ի՞նչ է հիշեցնում։

— Մայրս լիբանանյան հինգ ոսկի տվեց, որ երկու ոսկիով հաց գնեմ։ Փռապանին տվեցի հինգ ոսկին ու փոխանակ ինձ երեք ոսկի վերադարձնելու, ութը տվեց։ Ես տեսա, որ սխալվել է, ետ տվեցի հինգ ոսկին։ Մարդը զարմացավ ու շոյեց գլուխս։

Քարերը խոսում էին։ Տենին խոսեցնում էր նրանց։

— Այս մեկն էլ, մի պզտիկ աղջիկ իրենց տունը կորցրել էր ու լաց էր լինում մեր տան առջև։ Մոտեցա, անունը հարցրեցի ու հետո փնտրեցինք իրենց տունը... գտանք ու նա վազեց, մորը փաթաթվեց։ Այս քարը դրա համար դրի։

— Այս մե՞կը։

— Ընկերներիցս երկուսը բակի մեջ կռվում էին, հաշտեցրի և սկսեցինք երեքով խաղալ։

— Ապրես, Տենի, կարող ես նստել։

Տենիի քարերը շատ էին։ Շատ բարի գործեր էր կատարել։

— Մի գավաթ լցրել եմ ու մեկն էլ դեռ պիտի լցնեմ։

Նա դեռ շատ գավաթներ պիտի լցնի... դեռ ինչքա՜ն բարի գործեր են սպասում նրան։ •




Չվանաթեր անունով
Աճնվական կա մի,
Չունի ընկեր, եղբայր,
Աղջիկ ու որդի։
Չլինի փորձես
Նրա մոտ ընկնել,
Մուտքն են պահպանում
Երկու պահակներ։
Քարե առյուծ են
Պահակները այդ,
Գիշեր ու ցերեկ
Հսկում են անթարթ։
Միսթրն այդ տան մեջ
Ապրում է մենակ,
Մենակ է շրջում
Այգում շարունակ։
Այգում լճակ կա,
Լճակում՝ ձկներ,
Ծառերին թառած
Անթիվ թռչնիկներ։
Եվ մի գունագեղ
Փայտե տաղավար...
Եվ այս ամենը՝
Մեկ մարդու համար։
Տան մեջ ամեն ինչ
Իր տեղն է դրված,
Կարգ ու կանոնով,
Սրբա՜ծ, հարդարվա՜ծ։
Անթիվ սենյակներ՝
Հարյուրից էլ շատ,
Մեղրագույն պարկետ՝
Փայլփլուն հատակ։
Չորս կողմը պատած
Ճերմակ մարմարով,
Ոսկե սկահակ՝
Հատուկ պատվերով։
Դեռ միջնադարյան
Գինի կա այնտեղ,
Շքեղ կազմերով
Հաստափոր գրքեր։
Եվ... մի սպասք կա
Ճաշասրահում,
Մի անձեռոցիկ՝
Նախշերով սիրուն։
Եվ տանտերն ահա,
Շքեղ հագնված
Նստել է մենակ՝
Սեղանին հակված,
Որովհետև նա
Ոչ աղջիկ ունի,
Ոչ տղա ունի
Ու ոչ բարեկամ։
Ինչ անենք թե նա
Ազնվական է,
Կարեկցենք նրան։

*Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ*

# ՀԵՂԻՆԵ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Հայաստանի կոմերիտմիության համագումարի ամբիոնի վրա մեկը մյուսին էին հաջորդում երիտասարդները: Եթե խոսողը ինքն իրեն չըներկայացներ, անկարելի կլիներ հագնվածքից, արտաքին հարդարանքից, խոսվածքից, արտասանությունից որոշել, թե նրանցից ով է քաղաքաբնակ, ով գյուղաբնակ, ով բանվոր, ով մտավորական:

Ահա ամբիոնի վրա է երիտասարդ մի աղջիկ՝ Հեղինե Կիրակոսյանը: Ուսուցչուհի՞ է, նորավարտ ճարտարապե՞տ, գուցե թատերական ինստիտուտի ուսանողուհի՞... Երանի թե թատրոնի ասպարեզը ոտք դրած մեր բոլոր երիտասարդ դերասանդերասանուհիների բերանից հնչեր հայոց լեզուն այսքան անաղարտ, այսքան ճիշտ ու բնական արտասանությամբ, այսքան անկեղծ, հուզական:

Հեղինե Կիրակոսյանը ծնվել ու մեծացել է Ապարանի շրջանի Արա գյուղում: Նա իր աշխատանքային կյանքն սկսել է դեռևս աշակերտական նստարանից: Դասերից հետո գնում էր ֆերմա, օգնում կթվորուհի մորը: Դպրոցն ավարտելուց հետո նա նույն ֆերմայում վերջնականապես փոխարինեց իր հիվանդ մորը: Կթվորուհու աշխատանքը հեշտերից չէ, մանավանդ երբ աշխատանքները ֆերմայում դեռ ամբողջապես մեքենայացված չեն: Այստեղ դեռ ձեռքով է կատարվում անասունների կերակրումն ու կիթը: Հեղինեն այդ պայմաններում աշխատելով, տալիս է այնքան արտադրանք, որքան տալիս են լրիվ մեքենայացված ֆերմաների առաջավոր կթվորուհիները:

Հեղինեի նման աշխատավոր մարդկանց մասին է Պարույր Սևակն ասել.

Մարդ կա աշխարհն է
շալակած տանում...

Աշխատանքի ինչ բընագավառ էլ վիճակվեր Հեղինե Կիրակոսյանին, նա հանդես կբերեր նույնքան եռանդ, կաշխատեր նույնքան նվիրումով և իր արդար ու ազնիվ աշխատանքը նրան կբերեր նույն ճանաչումը: Նրա մասին շատ են գրել թերթերը և դեռ կգրեն, նա արժանացել է շատ պարգևների և դեռ էլի կարժանանա: Ընտրվել է Հայաստանի կոմերիտմիության կենտկոմի անդամ, ՀամԼԿԵՄ 19-րդ համագումարի պատգամավոր: Նա ազնիվ, արդար աշխատանքով իր պատվավոր տեղն է գտել մեր ժողովրդի այն զավակների շարքում, որոնք, հիրավի, աշխարհն են շալակած տանում:

Աշխարհը աշխարհ է նրանցով:

Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ





*(Պատառիկներ հուշերից)*

Օպերայի և բալետի մեր թատրոնը պատրաստվում էր բեմադրել մեկական արարով բալետներ՝ «Երեք նովել» ընդհանուր խորագրի տակ: Դրանք էին Ռավելի «Բոլերոն», Գերշվինի «Նեգրերի թաղամասը» և Ռոսինիի «Ֆանտաստիկ տիկնիկները»: Բեմադրող պարուսույցը Եվգենի Չանգան էր, դիրիժորը՝ տողերիս հեղինակը: Նկարչի տեղը թափուր էր: Չանգան, որ շատ նախանձախնդիր էր ձևավորող-նկարչի ընտրության հարցում, առաջարկեց ներքին կարգով մրցույթ հայտարարել և միայն այդ ճանապարհով ընտրել ներկայացման նկարչին: Միտքը դուր եկավ բոլորիս: Մրցույթ հայտարարեցինք: Մասնակցեցին մի շարք նկարիչներ, այդ թվում և Մինասը: Մինասին գիտեինք իբրև երիտասարդ օժտված գեղանկարչի, բայց նա երաժշտության ու թատրոնի հետ մինչ այդ գործնական կապ չէր ունեցել: Երբ բերեց «Բոլերոյի» ձևավորման իր էսքիզը, բոլորս անմիջապես եկանք այն համոզման, որ թատրոն է գալիս բեմը զգացող ու հարուստ ձիրքի տեր մի նկարիչ: Նրան էլ հանձնարարվեց մեր ներկայացման նկարչական ձևավորումը: Սկզբում Մինասի զուսպ ու համեստ բնավորությունը կարծել էր տալիս, թե նա մեղմ ու համակերպվող անձնավորություն է, սակայն շուտով համոզվեցինք, որ ստեղծագործական հարցերում նա չափազանց վստահ, իր գործում հմուտ և առարկություն չհանդուրժող արվեստագետ է:

Մի անգամ, օգտվելով Մինասի խաղաղ տրամադրությունից, Չանգան սկսեց նրան խորհուրդներ տալ և խորհուրդներ տալով, շատ հեռուն գնաց, սկսեց միջամտել նկարչի բուն գործին: Մինասը մեկեն բռնկվեց. «Եթե այդքան լավ նկարել գիտեք, թող բարի լինեիք մասնակցելու մրցույթին»: Ըստ երևույթին նրան դուր չէր եկել մրցույթին մասնակցելու միջոցով գործըն ստանձնելու հարկադրվածությունը, նաև վշտացած էր իր մերժված նկարիչ ընկերների համար:

Վերջապես երեք բալետն էլ ձևավորեց, որոնց հենց առաջին ներկայացումը հասարակայնությանը ավետեց, որ հայտնվել է բեմական մի նոր շնորհաշատ նկարիչ: «Տիկնիկների» վառ գույները ողողել էին բեմն ու հրճվանքով լցրել դահլիճը, իսկ «Բոլերոյի» բազմանշանակ ու հուզիչ ետնավարագույրը ընդմիշտ տպավորվեց դիտողների հիշողության մեջ, որը հենց երևաց՝ դահլիճը թնդաց ծափերից:

Մինասին դա շատ ոգևորեց: Նա փառատենչ չէր, բայց գիտեր իր գինը և անտարբեր չէր հասարակության անմիջական գնահատանքի նկատմամբ: Եվ ասաց. «Շատ զարմանալի բան է, մեծ կտավներ ես ստեղծում, տարիների մտահղացումներդ մարմնավորում, բայց երբ ցուցադրում ես, երբեք այս-

պիսի ջերմ վերաբերմունքի չես արժանանում»:

Դրանից հետո նա թատրոնին կապվեց անքակտելիորեն: Թեպետ այս աշխատանքը նրանից շատ ժամանակ ու նյարդերի լարում էր պահանջում, այլև չկարողացավ հրաժարվել դրանից: Իր խոստովանությամբ, մեկ ներկայացման ձևավորման վրա ծախսված ժամանակում տասը կտավ կարող էր ստեղծել, բայց թատրոնի առինքնող ուժը նրան էլ էր գերել, ինչպես թատրոնում աշխատող յուրաքանչյուր մարդու՝ սկսած գեղարվեստական ղեկավարից մինչև բեմի բանվորը: Քանիցս նա ինձ խոստովանել է.

— Ամեն անգամ ինձ խոսք եմ տալիս, այլևս թատրոնի համար գործ չանել, բայց անցնում է որոշ ժամանակ, և չեմ կարողանում հրաժարվել հրավերից:

Ես խորապես համոզված եմ, որ նա ամենից առաջ և ամենից շատ՝ բեմի նկարիչ էր, թեև ձևավորել էր նաև մի շարք ներկայացումներ դրամատիկական թատրոնում և օպերայում:

Թատրոնի աշխատանքը Մինասի համար առանձնապես հոգնեցուցիչ ու դժվար էր, որովհետև նա ոչ մի բան չէր վստահում ուրիշներին, մասնակից էր լինում ձևավորումն իրականացնելու բոլոր աշխատանքներին, հաճախ նույնիսկ համբերությունից հանելով կատարող-նկարիչներին:

Սովորաբար նկարիչն իր ձևավորման էսքիզները հանձնում է թատրոնի կատարող-նկարիչներին և երբ նրանք իրենց գործն ավարտում են, նոր միայն դիտում է ու որոշ ուղղումներ մտցնում: Մինասը հենց սկզբից փոխեց ձևավորող նկարչի դերն ու նշանակությունը մեր թատրոնում: Առաջին իսկ րոպեից մեծ վրձինը ձեռքին նա կանգնում էր հսկայական կտավի առջև և հենց ինքն էլ սկսում գործը, խոշոր-խոշոր գծերով ու գլխավոր կոնտուրներով նշում կատարողների հետագա անելիքը: Կատարող-նկարիչները սկզբում դժգոհում էին. սովոր չէին հեղինակի այդպիսի միջամտության, բայց Մինասը աննահանջ իրենն էր անում: Երբ մի անգամ կատարող-նկարիչներից մեկն ասաց, որ էսքիզը տա իրենց ու ինքը գնա, Մինասը պատասխանեց. «Էսքիզն ինձ համար է, ոչ թե ձեզ: Ես էլ վստահ չեմ, արդյո՞ք կհավանեմ այս նույնը, եթե մեծ չափերով տեսնեմ: Ուրեմն տեղնուտեղը պիտի փոխեմ»: Այս խստապահանջության արդյունքը եղավ այն, որ ներկայացումների ընթացքում, ամեն անգամ բեմը բացվելիս, ծափերի տարափը մի քանի րոպեով խանգարում էր երաժշտությունը լսելուն:

Մինաս-նկարչի թատերական ձևավորումները լայն ժողովրդականության արժանացան: Մարդիկ սկսեցին թատրոն գալ ոչ միայն բեմադրության ու երաժշտության, այլև նկարչական ձևավորման համար, որը մեր թատրոնում մի նոր աստիճանի բարձրացավ նրա շնորհիվ:

Կարճ ժամանակում Մինասի հաջողությունը, որպես թատերական նըկարչի, այնպիսի համբավ բերեց, որ շատ թատրոններ, ոչ միայն երևանյան, քայլեր ձեռնարկեցին նրա հետ համագործակցելու: Եթե թեման բան էր ասում իր սրտին՝ համաձայնում էր ու իսկույն սկսում աշխատել էսքիզների վրա:

Երկար հապաղեց մի ներկայացման էսքիզների գործին ձեռնամուխ լինելուց առաջ: Գալիս էր բոլոր փորձերին, լսում երաժշտությունը, հաճախ ներկա գտնվում նույնիսկ պարային փորձերին, բայց կարծես երկյուղածությունից՝ չէր սկսում աշխատանքը: Դա Էդգար Հովհաննիսյանի «Անտունին» էր: Սրա ձևավորման առաջարկությունը նա իսկույն ընդունեց. «Անտունին իմ թեման է, մոտ է ինձ իր կերպարով» ,— ասաց նա: Էսքիզների վրա աշխատանքի անցնելուց հետո էլ, երկար ժամանակ չէր բավարարվում իր ստեղծածով: Շարունակ փոփոխում էր, և եթե երբևէ համեմատելու լինենք դրանց տարբերակները, ապա զարմանքով կնկատենք, որ առաջին էսքիզների և վերջինների մեջ ոչ մի ընդհանուր բան չկա: Ավարտուն ձևավորումը ցնցում է իր խորությամբ, հույզերի ու զգացումների անօրինակ արտահայտչականությամբ, գեղանկար-



Էսքիզ՝ Ա. Խաչատրյանի «Գայանե» բալետից



Էսքիզ՝ Է. Հովհաննիսյանի «Անտունի» բալետից



Էսքիզ՝ Ա. Խաչատրյանի «Գայանե» բալետից

չական բարձր ճաշակով և դասական թեմայի այժմեական լուծումով:

«Անտունիի» ձևավորման մեջ զարմանալիորեն ի մի են բերված էպիկականն ու քնարականը: Այս ամենը ինձ, որպես դիրիժորի, մեծապես օգնեցին շեշտելու երաժշտական ու բեմական իրադրությունների վեհությունն ու դրամատիզմը:

Մինասը սկսել էր նաև «Սասունցի Դավթի» ձևավորումը, բայց դեռ մատիտով ու թերթիկների վրա: Թեման նույնքան հարազատ էր նրան, իսկ մեկնաբանության այն նախնական ուրվագծումները, որոնք տեսել էի, փայլուն արդյունք էին խոստանում:

Մինասի թատերանկարչական գործերի մեջ ուրույն տեղ է գրավում «Գայանեի» նոր բեմադրության ձևավորումը: Նոր լիբրետո էր գրվել, որի հետ կապված՝ Արամ Խաչատրյանը նոր կտորներ էր գրում, ձևափոխում, հանգույցներ ստեղծում: Նկարիչը Մինասն էր: Նա արդեն շատ հայտնի նկարիչ էր և իր խառնվածքով ու ներկապնակով միանգամայն հարազատ ու համահնչյուն Խաչատրյանի երաժշտությանը: Խաչատրյանն էլ ոգևորված էր, թե՛ նոր բեմադրության փաստով, թե՛ նկարչից սպասելիք ձևավորումով:

Հեղինակային համերգներով Խաչատրյանը Երևան էր եկել և ցանկություն հայտնեց Մինասի արվեստանոցը գնալ և հատկապես դիտել «Գայանեի» էսքիզներն ու մանրակերտը: Խաչատրյանի հետ էին նրա որդին՝ Կարենը (Մինասի երկրպագուն), Էդգար Հովհաննիսյանը, Վիլեն Գալստյանը և տողերիս հեղինակը: Խաչատրյանը սիրում էր հարցեր տալ և հաճախ իրեն շատ բնորոշ՝ մանկական միամտությամբ:

Դիտելով Մինասի վառ էսքիզները՝ Խաչատրյանը դարձյալ իրեն շատ հատուկ անմիջականությամբ ասաց. «Մինա՛ս, քեզ արդյոք չի՞ թվում, որ կարմիրը շատ է»: Որդին, որ միշտ անվերապահորեն հավանում էր Մինասին, վախենալով, որ հարցն անտեղի է, հանդիմանական հայացք գցեց հոր վրա: Մինասը, որ նույնքան խելոք էր ու սրամիտ, որքան և տաղանդավոր, դի-

պուկ պատասխանեց Խաչատրյանին. «Ինձ էլ թվում է , թե ձեր երաժըշտության մեջ շեփորները են շատ»:

Մինասը երաժշտական կրթություն չուներ, բայց, որպես իսկական արվեստագետ, բնազդով ճիշտ էր ընկալում երաժշտությունը, որի շնորհիվ խորապես «երաժշտական» էր նրա գունաշարը:

Նա իր արվեստանոցում մի փիսհարմոնիա ուներ, որն այնքան հին էր ու այնքան վատ վիճակում, որ գործածության համար անպետք էր: Մի անգամ վարպետ բերեցի և առաջարկեցի վերանորոգել: Վարպետը նայեց ու ասաց, որ դա անհնարին է և առաջարկեց դեն նետել: «Ո՛չ, թող մնա,— ասաց Մինասը,— սա տրամադրություն է ստեղծում, ես կարծես լսում եմ սրա ձայնը, և դա աշխատելիս օգնում է ինձ»:

Մինասի նկարչական ձևավորումները գլուխգործոցներ են, որոնք, ինձ թվում է, առանց ներկայացումների էլ կապրեն ինքնուրույն կյանքով: Դըրանք, ես կարծում եմ, Պետիպայի բեմադրությունների պես, հարյուրամյակներ հետո էլ կկրկնվեն ու կվերականգնվեն, քանի որ ճշմարիտ արվեստը մահ չունի:

Վերջին անգամ Մինասին տեսա իր մահվան չարագուշակ օրը:

«Անտունի» բալետի 50-րդ ներկայացումն էր: Այդ օրը նա թատրոնում չերևաց, թեև իր սովորության համաձայն գալիս էր առավոտից՝ մասնակցելու ներկայացման նախապատրաստմանը: Ներկայացմանը եկավ հոգնած ու անտրամադիր:

Ներկայացումը շատ տոնական էր: Կային նաև հյուրեր Մոսկվայից: Էդգար Հովհաննիսյանը ներկայացումից հետո իր տուն էր հրավիրել բոլորին: Մինասը հրաժարվել էր հենց սկզբից: Երբ ներկայացումից հետո եկավ դիրիժորական սենյակ, ես փորձեցի համոզել, որ չմերժի հրավերը: Նա ասաց. «Չեմ կարող, շատ հոգնած եմ, նոր եմ եկել Լենինականից: Տուն էլ չեմ մտել»:

Եվ այդպես էլ տուն չմտավ:

ՀԱԿՈԲ ՈՍԿԱՆՅԱՆ

ՀՍՍՀ ժողովրդական արտիստ




## ԿԱՐՈՒԶՈ-ՀՐԱՇՔԸ

Հռչակավոր Կարուզոն, մեր դարի առաջին տասնամյակների չգերազանցված տենորը, բոլոր տենորների համար անհասանելի գագաթ էր: Կարուզոյի ձայնի հզորությունն ու գեղեցկությունը, չհաշված տաղանդավոր երգիչ-դերասանի մյուս արժանիքները, շատ տարիներ տարակուսանք են պատճառել մարդկանց: Մարդիկ իրենց աչքերին ու ականջներին չէին հավատում, երբ Կարուզոն, շնչելով դաշնամուրի լարերի վրա, ստիպում էր նրանց հնչել, իսկ պատուհանի ապակիներին՝ զրնգալ:

Կարուզոն շատ գիտնական ֆիզիոլոգների, ակուստիկների, կոկորդաբանների էր հետաքրքրում, ու նրանք երգչից թույլտվություն ստացան մահից հետո ուսումնասիրելու նրա օրգանիզմը: Արդյունքները ապշեցուցիչ էին: Ինչպես վկայում է ֆրանսիացի գիտնական Ռաուլ Գյուսոնը, Կարուզոյի կոկորդն ու «երգային ապարատը» իրոք որ բացառիկ էին: Երգիչների ձայնալարերի երկարությունն, ընդհանրապես, չի անցնում 18—20 միլիմետրից, իսկ Կարուզոյինը՝ մոտ կրկնակի երկար էին: Լեզվակի նուրբ ու ճկուն կապը նշագեղձի հետ հաճախացված տատանումներ էին տալիս և ապահովում մեծ ձայնածավալը:

ԴՊՐՈՑԱԿԱՆԻ «ԿԱՐՄԻՐ ԳԻՐՔ»

# ՍԵՎԱՆԻ ԻՇԽԱՆԸ

Սևանի իշխանը էնդեմիկ տեսակ է, այսինքն ապրում է միայն Սևանա լճում: Ճիշտ է, 1936 թվականից նա բնակություն է հաստատել նաև հեռավոր Կիրգիզիայի Իսիկ-Կուլ լճում, սակայն դա Սևանից տարված և այնտեղ կլիմայավարժեցված իշխանն է, որը նոր պայմաններում կերպարանափոխվել է, դարձել ավելի խոշոր ու իսկական գիշատիչ:

Սևանա լճում տարբերում են իշխանի 4 տեսակ. ձմեռային իշխան, գեղարքունի, ամառային իշխան և բոջակ: Ձմեռային իշխանն ու բոջակը ձվադրում են լճում՝ աշնանն ու ձմռանը, իսկ ամառային իշխանն ու գեղարքունին ձվադրման համար Սևան թափվող գետերի հոսանքով բարձրանում են դեպի ակունքները: Ամառային իշխանը ձվադրում է մայիս-հունիս ամիսներին, այստեղից էլ նրա «ամառային» անունը, իսկ գեղարքունին՝ նոյեմբեր-հունվար: Այս 4 տեսակից ամենաբեղունը ձմեռային իշխանն է, որն ընդունակ է դնելու մինչև 22000 ձկնկիթ, մինչդեռ իշխանի թզուկ, գաճաճ տեսակը՝ բոջակը, տալիս է 1000-ից պակաս ձկնկիթ: Իհարկե, ոչ բոլոր ձկնկիթներն են զարգանում ու դառնում ձկնիկներ, նրանց մեծ մասը այդ ընթացքում ոչնչանում է, կամ կեր դառնում հենց իրեն՝ իշխանի համար:

Հաճախ իշխանին անվանում են «բախտակ», կարծելով, թե դա այլ տեսակ է: Սակայն թե՛ իշխանը և թե՛ բախտակը առանձին տեսակներ չեն, այլ ձկան՝ կյանքի տարբեր շրջաններն են բնութագրում: Ստերջ (չբազմացող) վիճակում գտնվող փորելները, անկախ նրանից, թե որ տեսակին են պատկանում, կոչվում են իշխան: Այդ շրջանում նրանք պատվում են արծաթափայլ թեփուկներով, ունենում համեղ, կարմրավարդագույն միս:

Վերջին տարիներին իշխանի քանակությունը լճում պակասել է: Դրա հիմնական պատճառը լճի ջրային մակարդակի իջեցումն է: Եթե անցնելու լինեք Սևանից Կամո տանող ճանապարհով, ուշադրություն դարձրեք աջակողմյան սարալանջին: Այն ամբողջովին պատված է սպիտակ քարակույտերով ու ժայռաբեկորներով: Այդ տարածքը ընդամենը 30 տարի առաջ գտնվում էր ջրի տակ, և հենց այդտեղ էին ձվադրման գալիս ձմեռային իշխանն ու բոջակը: Հիմա արդեն չորացել են, չկան ոչ այդ, ոչ էլ լճի մյուս մասերում եղած նախկին ձվադրավայրերը: Սևանի մակարդակի իջեցման հետևանքով, փոխվել են լճի գազային ու ջերմային ռեժիմները: Ձմռանը լիճը պատվում է սառույցի շերտով, իսկ ամռանը ջուրը շուտ է տաքանում: Տաք ջրերում բուռն կերպով զարգանում են ջրիմուռները, որոնք ակտիվորեն կլանում են ջրում լուծված թթվածինը: Իսկ իշխանին, նորմալ կենսագործունեության համար, հարկավոր է թթվածնով հարուստ, սառը ջուր: Ճիշտ է, իշխանի վերարտադրման համար, գործում են Սևանի, Կամոյի, Կարճաղբյուրի և Լիճքի ձկնաբուծարանները, սակայն դա այս կամ այն չափով ապահովում է միայն ամառային իշխանի ու գեղարքունու վերարտադրությունը: Այս երկու տեսակները ձվադրման համար մտնում են գետերը, որտեղ նրանց որսալը բավական հեշտ է: Ձկներից վերցնում են ձկնկիթը և բուծում արհեստական ճանապարհով: Ինչ վերաբերում է լճում ձվադրող ձմեռային իշխանին ու բոջակին, ապա նրանց մայրական վտառի որսալը լճում այնքան էլ դյուրին գործ չէ, իսկ արհեստական բուծումը կապված է մեծ դժվարությունների հետ: Բայց, ցավոք, միայն այդ պատճառով չէ, որ ձմեռային իշխանի ու բոջակի քանակությունը տարեցտարի նվազում է: Մեծ վնաս են հասցնում ձկնագողերը, որոնց հանցավոր ձեռքը բռնելը բոլորիս պարտքն է:

*ՌԱՖԻԿ ՌՈԽԿՅԱՆ*
կենսաբանական գիտ. թեկնածու

# Քիչ հետո անձրև կգա

*ԱՐՏԱՇԵՍ ԱՏՈՄԻ*

Մեր տան պատշգամբում հին, շատ հին բազկաթոռ կա: Մայրս ուզում է դեն գցել, հայրս չի թողնում: Ես էլ չեմ ուզում, որ դեն գցեն: Միշտ նստում եմ ու նայում սև՝ կարկտաբեր, մոխրագույն՝ հեղեղ, մոխրագույն ու ճերմակ՝ անձրևաբեր, հետո ճերմակ՝ ոչ մի բան չբերող, շերտավոր, գունդ-գունդ, հազար ու մի ձևերով ամպերին: Այ, այ, հիմա եկավ, հենց իմ գլխավերևում կանգ առավ: Օ՜, ինչքան էլ մե՜ծ է: Ես այդքան մեծ կոկորդիլոս չեմ տեսել: Ամպի չափ մեծ է: Ափի մոտ պառկած հանգստանում է: Կուշտ կերել ու հանգըստանում է: Նրան ոչ մի բան չի հետաքրքրում, ոչ սառը ջուրը, ոչ ձկները, ոչ քամին: Բայց քամին... նրա հոգու հետ է խաղում՝ ձգում է պոչից, քաշում, երկարեցնում, կարծես փչովի խաղալիք է: Երկարեցնում-երկարեցնում, դարձնում է ընձուղտ, սոված ընձուղտ, որը բարձր ծառից տերևներ է պոկում: Քիչ այն կողմ նապաստակ է փախչում, բայց ու՞ր, թաքնվելու տեղ կա՞... Բայց փախչել չի էլ հասցնում, որովհետև ականջները այնպես են երկարում, երկարում, երկարում, որ դառնում են աղվեսի պոչ... Նայե՛ք, ուշադի՛ր նայեք, ի՜նչ սև ամպեր են գալիս: Ոչ թե գալիս, այլ հարձակվում են այս խեղճ ու կրակ ճերմակ-գազանիկ ամպերի վրա: Ինչ-որ մի ձիավոր զորքի առաջն ընկած հարձակվում է: Ինչ խոժոռ էլ դեմք ունի: Աչքերը կայծերով են լիքը: Ո՞վ է նա: Սպասիր, սպասիր: Ախր գիտեմ, է՜: Նա՛ է: Հենց նա՛ է որ կա:

— Խփե՛ք, խփե՛ք, ես դրանց... — ասում եմ,— խփե՛ք, խփե՛ք:

Սկսվում է կոտորածը: Մեր բանակը շատ մեծ է, շատ է մեծ: Սպիտակներին առնում են իրենց մեջ, ու սպիտակները կորչում են, չեն էլ երևում: Այս ի՞նչ է անում սպարապետը, այս ի՞նչ է անում, ինչու՞ է առանձնանում իր բանակից: Սպիտակները շրջապատում են նրան: Ինքը մենակ, սպիտակները շատ:

— Հասե՛ք, հասե՜ք,— գոռում եմ ես,— հասեք օգնության,— քիչ է մնում լաց լինեմ: —Մենակ է մնացել Վարդան Մամիկոնյանը... Այ այդպես, հասեք, հասեք, ու՜խ, ու՜խ, ձեր հոգուն մատաղ:

— Ու՞մ հետ ես այդպես խոսում,— մայրս ելնում է պատշգամբ:

— Տես է, մամ, տես է,— ոգևորված ցույց եմ տալիս:

— Ի՞նչ կա որ,— զարմանում է նա:

— Չես տեսնու՞մ, ճակատամարտ է, Ավարայրի ճակատամարտը...

— Ճակատամարտ է, այո. ճակատամարտ, իսկական,— ժպտում է մայրս:— Քիչ հետո անձրև կգա:




## ԳԼԻՆԿԱՅԻ ԹՌՉՆԱՆՈՑԸ

Մ. Ի. Գլինկան մանկուց սիրում էր թռչուններին և մինչև կյանքի վերջին տարիները, որտեղ էլ որ ապրեր, միշտ երգող թռչուններ էր պահում: Դա ժառանգական հրապույր էր. Գլինկաների ընտանիքում միշտ էլ սիրել ու պահել են թռչուններ: Մ. Ի. Գլինկան «թռչնանոց» ուներ Նովոսպասկիում ու Պետերբուրգում: Եվ նույնիսկ իր հեռավոր ճամփորդությունների ընթացքում առժամանակ մնալով Փարիզում, Սևիլյայում, Վարշավայում, նա անպայման մի քանի չափ փետրավոր երգիչներ էր ձեռք բերում: Թռչունների երգը կոմպոզիտորին տրամադրում էր երաժըշտական իմպրովիզացիների. երգեցիկ համերգից հետո նա երկար ժամանակ դաշնամուր էր նվագում: Հաճախ էլ նա ինքն էր հրահրում թռչուններին, նրանց համար ջութակ նվագելով: Թռչունների ուրախ ճռվողյունը անվերջ հիացմունք էր պատճառում կոմպոզիտորին:



## «ՀԱՐԵՎԱՆՈՒՀԻՍ ՎՀՈՒԿ Է»

Երկու հարյուր հիսուն «վհուկների» ու «հմայողների» աններդաշնակ երգեցողության տակ հարսնացուն ու փեսացուն արևի ու լուսնի պատկերներով երկնագույն ժապավեններ կապեցին գլուխներին, հետո երկուսն էլ ցախավելներ հեծան... Այսպես Ջորջիա նահանգի (ԱՄՆ) բնակիչներ՝ քսանամյա Ջոն ու Դոննա Բիզլիները նոր, մոդայի մեջ արագ մտնող հեթանոսական ձևով արին իրենց հարսանիքը:

Ամերիկյան կրոնն ուսումնասիրող ինստիտուտի տվյալների համաձայն, այսօր ԱՄՆ-ում մոտ քառասուն հազար հեթանոս կա, որոնք Հին Եգիպտոսի,

## ԱՐԱ՞Գ, ԹԵ՞ ԴԱՆԴԱՂ

Սրընթաց արագությունների մեր դարում ամենաարժեքավորը ժամանակն է: Մի լրագրող երկար տարիներ տեղեկություններ է հավաքել երևույթների տևողության մասին: Հիրավի, մի՞թե հետաքրքիր և ուսանելի չէ իմանալ, որ՝

— 0,005 վայրկյան է պետք, որպեսզի մեղուն իր թևիկը մեկ անգամ թափահարի.

— 0,02 վայրկյան է հարկավոր, որպեսզի մարդը սրսկումից հետո ցավ զգա.

— 0,1 վայրկյան է անհրաժեշտ, որպեսզի տիեզերական սարքը դեպի Լուսին թռչելիս 1 կմ անցնի.

— 1,25 վայրկյան է պետք Լուսնից ուղարկված գունային ազդանշանին Երկիր հասնելու համար.

դրուիդների, անտիկ հույների ու հռոմեացիների, ամերիկյան հնդկացիների կրոնն են դավանում, կամ ուղղակի՝ ցախավել երկրպագում: Ոմանք գտնում են, որ Ամերիկայում նոր կրոն է գոյանում՝ նոր նեոհեթանոսություն: Ինչպես վերջերս հիպպիները, այսօրվա նոր հեթանոսները իրենց ձևով են բողոքում կապիտալիստական հասարակության դաժանության և, գլխավորապես, պաշտոնական կրոնի՝ քրիստոնեության դեմ: Նորաթուխ հեթանոսներից մեկը բացատրեց. «Եթե Միացյալ Նահանգների պարոն պրեզիդենտը հավատում է Քրիստոսին և, միաժամանակ, պատրաստ է խլել աղքատից վերջին դոլլարը, որպեսզի տա զենքի փաբրիկանտին, ապա ես ավելի լավ է Օզիրիսին, Ապոլլոնին, Պանին, Լյուցիֆերին կամ ուղղակի պոզավոր սատանային հավատամ»:

Հեթանոսների ու քրիստոնյաների միջև հարաբերությունները առայժմ խաղաղասիրական են: Վհուկներին,




կախարդներին կամ ուղղակի հերետիկոսներին առայժմ չեն այրում խարույկի վրա: Նույնիսկ աշխատում են նրանց խոսք հասկացնել: Օրինակ, մի օր առավոտյան Աթենաս Պալլասին երկրպագող Միներվա Սուարեն իր տան մոտ գտնվող բացատում հարևանների մի խումբ նկատեց: Նրանք ջերմորեն աղոթում էին սրա հեթանոսական հոգու փրկության համար: Փոխանակ ցախավելը ձեռքն առնի ու իր տիրույթը մաքրի անկոչ ներխուժածներից, Միներվան միացավ աղոթողներին, կրքոտ աղերսով դիմելով Աթենաս Պալլասին, թե թող ների իր հարևանների տգիտությունը:

*Թարգմ. Լ. ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

---

— 20 վայրկյան է պետք ռադիոմեկնաբանին ամենամեծ արագությամբ 100 բառ արտասանելու համար.
— 1 րոպեում մկան սիրտը բաբախում է 1000 անգամ.
— 87 րոպե տևեց Անգլիայից ծովի վրայով առաջին անգամ Ֆրանսիա թռչող օդաչուի թռիչքը.
— 1 ժամ 10 րոպեում որսին հետապնդող վագրակատուն կարող է վազել 100 կմ.
— 4 ժամում գերձայնային ինքնաթիռը կտրում-անցնում է Ատլանտիկան.
— նույն ճանապարհով 8 օր է լողում տուրիստական մարդատար շոգենավը.
— 21 օր է տևում եմենյան որոշ ցեղերի հարսանիքը.
— 1 տարվա մեջ մարդկային սիրտը 2760000 լիտր արյուն է մղում.
— 8 տարի տևեց Անգարա գետի վրա Իրկուտսկի էլեկտրակայանի կառուցումը.
— 20 տարի է ապրում ձին.
—600 տարի պետք է անցնի, որպեսզի ռադիոակտիվ ստրոնցիում-90-ի թափոնները լրիվ անվտանգ դառնան.
— 30000 տարի պետք եղավ մարդկությանը, որպեսզի ժայռապատկերներից անցնի ժամանակակից գեղանկարչությանը, քարե կացնից՝ ավտոմեքենային, վայրի պտուղներ հավաքելուց՝ սառնարանին և գազօջախին.
— 4 միլիարդ տարի է հաշվվում մեր մոլորակի քարերի տարիքը:

Ինչ-որ բան մենք այստեղ կլորացրել կամ պարզեցրել ենք, դա կարևոր չէ: Նորին Մեծություն Ժամանակը զարմանալի երևույթ է՝ մեկ սրընթաց փոթորկի պես է անցնում, մեկ էլ այնքան դանդաղ է հոսում, որ անշարժ է թվում:




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 7 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Շապիկի առաջին էջին՝ «ՀԱՑ», լուսանկարը՝ ԱՎԵՏ ԽՍԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 31.3.1982 թ.: Ստորագրված է տպագրության 14.6.1982 թ.: ՎՖ 05869

Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ նորք: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66062: Պատ. 708: Գինը՝ 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.



# ՊԻՈՆԵՐ-ի փոստը

Մոտենում է մեր հայրենիքի մեծ տոնը՝ ՍՍՀՄ կազմավորման 60 տարին: ՍՍՀՄ պատմությունը եղբայրական ժողովուրդների համագործակցության ամրապնդման, ծաղկման պատմություն է: Մենք որոշել ենք միութենական բոլոր հանրապետությունների, ինչպես նաև պիոներական կազմակերպությունների վերաբերյալ տեղեկություններ, լուսանկարներ հավաքել:

Եթե մեզ օգնեք այդ գործում, շատ երախտապարտ կլինենք:

Մեր հասցեն է՝

МССР—279782<br>
Шолдонештский р-н<br>
с. Кушмирко, с/ш, КИД<br>
«Красная гвоздика»

Ապրում եմ Աբխազիայի Գագրա քաղաքում: Շատ եմ ուզում ծանոթանալ հայաստանցի իմ հասակակիցների հետ: Սովորում եմ 5-րդ դասարանում:

Իմ հասցեն է՝

Абхазская АССР,<br>
г. р/он г. Гагра<br>
к/з им. Ленина<br>
Кондакчян Амаля

Ձեզ գրում է Կուսկիլդինա Լիլիան Բաշկիրիայից:

Տասնչորս տարեկան եմ, սովորում եմ 8-րդ դասարանում: Շատ եմ ցանկանում նամակագրական կապ ունենալ ձեր հանրապետությունում ապրող իմ հասակակիցների հետ:

Իմ հասցեն է՝

БАССР<br>
Федоровский р-н, с. Бала-Четерман,<br>
ул. Терешкова 20,<br>
Кускильдиной Лилии А.

